# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՔԱՌԱՍՈՒՆԵՒՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԻ

1931

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ



# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Fünfundvierzigster Jahrgang

1931

Wien

Mechitharisten-Buchdruckerei

*կ'ըլլայ քան յաբեթական տարաղձն եւ կը բովանդակէ քաղաքակրթութեան մը կառուցուածքը, որուն հասնիլ կրնային ինչպէս սպիտակ՝ նոյնպէս կարմիր կամ սեւ ցեղը եւ ո՛չ միայն զանազանակաց մին եւ այն ալ սպիտակ ցեղի մէկ տեսակը: Հնէախօսութեան մէջ գործ ունինք արդէն մարդերու հետ, որոնք կենաց ընդհանուր պայմաններու ենթարկեալ են, կենաց պայմաններ՝ զորոնք իւր առջեւն ունէր ինչպէս որսորդն՝ նոյնպէս հովիւն եւ կամ երկրագործը, մարդիկ՝ որոնք նոյն գործիքները կը գործածեն — քարէ կամ հիմնական մետաղներէ, այն է՝ պղինձ ու երկաթ: Իրաց այս վիճակին մէջ բնականապէս կը ծագի նաեւ խնդիր յաբեթական շրջանի սկզբնաւորութեանց մասին, խնդիր մը՝ զոր անորոշ կը թողում, վասն զի իմ ծանօթութիւններէս վեր է: — Ասի (կ'ըսէ քննադատը), պայծառ ու հանդարտաբան խօսք մըն է, եւ յայսմ զիրար կրնան գտնել լեզուագէտներն, վիպաքննինք ու ազգագիրները*[96]:

*Բոլորովին ուրիշ կարգի իմաստով են այն քննութիւնքն, որոնք գրուած են Ս. Գրոց մեկնաբանութեան հետամուտներէ եւ որոնց շատերն ի հարկէ քննութեան առած են նաեւ Ծննդոց գրոց ծանօթ ազգացանկը: Այսպիսիները յիշատակել հեռու կը տանէր զմեզ, եւ մեր նպատակէն ալ դուրս*[97]:

*(Շարունակելի:)* *Հ. Յ. Տ.*

---

[96] *Անդ, էջ* 72—73: — *Հմմտ.* Մեշչանինովի *գործը «Ներածութիւն Յաբեթաբանութեան»* (J. Meščaninov, Vvednie v Jafetidologiju, Leningrad 1929, pp. 200): *Գործոյս մասին քանի մը խօսք կ'ըսէ Մ. Դոստոյեւսկի իւր ընդհանուր տեսութեան մէջ՝ «Արդի ռուսական հրատարակութիւններն Արեւելագիտութեան ճիւղին մէջ, մատենագիտութեամբ»* (Milius Dostojewskij, Die modernen russischen Publikationen auf dem Gebiete der Orientalistik, mit Bibliographie, *ի* „Litterae Orientales“, Orientalischer Literaturbericht Leipzig, Otto Harassowitz, 1930, Heft 44, p. 1—15): *Այս տեղ կ'ըսուի թէ «Յաբեթական տեսութեան, այս նոր նիւթապաշտական լեզուագիտութեան՝ ժողովրդականացնողն մըն է Մեշչանինով, ակադեմական Մառի աշակերտն ու աշխատակիցը, իւր երկով»... եւն. եւ թէ նպատակ ունի Յաբեթաբանութեան ներկայ վիճակն եւ պատմական զարգացումը ներկայացնել: Անոր առաջին մասը, կ'ըսէ, այն է՝ Յաբեթական տեսութիւնը սկզբանէ մինչեւ վերջին «նուաճումները», գերմաներէն հրատարակութեան մը համար սահմանուած էր նախապէս, որ սակայն լոյս չտեսաւ եւն:*

[97] *Շատ ըլլայ յիշել գործ մը՝* Friedrich Schmidtke, Die Japhetiden der Biblischen Völkertafel. Breslau 1926, pp. VIII + 95 (= Breslauer Studien zur bibl. Theologie, Bd. 7).

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԸ ԵԶՆԻԿԻ ՔՈՎ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱԿՆԱՐԿ

*Եզնիկ մեր մատենագրութեան մէջ եզական դիրք մը կը գրաւէ, ո՛չ միայն իր լեզուին գերազանց կատարելութեամբ ու փիլիսոփայի լուսամիտ տրամաբանութեամբ, այլ նաեւ իր մեզի ներկայացուցած տարաղձին մէկ մասին՝ մեծ շահեկանութեամբ: Այդ թանկագին նիւթը ժողովրդական հաւատալիքներն են, մեծարժէք բեկորներ, որոնք հին դարերու դիցաբանական հսկայ շէնքէն մնացած աւերակի վկաներն են:*

*Պեղումներ կատարող գիտնականի մը երկիւղածութեամբ կ'ուզեմ մօտենալ այդ թանկագին բեկորներուն. եւ զանոնք մի առ մի զննելով՝ կ'ուզեմ եզրակացնել ա՛յն սերտ կապերը, որոնք այդ բեկորները հայ ժողովուրդի հոգւոյն եւ էութեան հետ կարծես անխզելիօրէն զօդուած են, այնպէս որ այդ հաւատալիքները մինչեւ այսօր կապուած են հայ ժողովուրդի սրտին:*

1. *Անհուն երախտիք պարտական ենք մեծ Կողբացւոյն, որ՝ թէեւ ակամայ՝ այդ հին* հաւատալիքները պահպանած *է մեզի: Մինչ Եզնիկ մէկ կողմանէ զանոնք հերքել կը ջանայ, որպէս զի բնաջինջ ընէ, միւս կողմանէ՝ նոյն գործողութեամբ՝ զանոնք իր ձեռքով կ'արձանագրէ եւ ապագայ դարերու կը յանձնէ: Ի՛նչ հսկայ ծառայութիւն մատուցած կ'ըլլար Եզնիկ հայ ազգին, եթէ հայրենի դիցաբանութեան եւ սին հաւատքին ուրիշ մասերն ալ իր հերքումներուն ենթարկէր, եւ կամ նոյն իսկ անոնց կարեւորութիւնն ըմբռնէր եւ ամբողջութեամբ գրի առնէր: Սակայն եւ այնպէս այդ թերութեամբ ալ Եզնիկի արժանիքը չի նուազիր. վասն զի ի՛նչ որ հայ սին հաւատքէն կը ներկայացնէ մեզի Եզնիկ, իր իսկական հարազատութեամբը կը ներկայացնէ, առանց իւր կողմէն ներմուծումներ ընելու: Այսպէս, շատ տեղ ռամկին բերանը կը դնէ իր մերժելիք հաւատալիքը եւ ապա կը հերքէ անոր կարծիքը: Եզնիկի այս չքնաղ յատկութիւնը մեր շատ մը մատենագիրներուն կը պակսի: Առնենք՝ օրինակի համար՝ Մ. Խորենացին, որ թէեւ մեծաքանակ տարաղձ կը մատակարարէ մեզի՝ մեր հայրերու հին հաւատքէն, բայց ա՛յնպէս կերպարանափոխ վիճակի մէջ, որ շատ անգամ*

մասնագէտ դիցաբանն իսկ կը վարանի եւ Խորենացւոյ հանդէպ տհաճ տրամադրութեամբ կը համակուի: Բնական է, Խորենացի եւ իրեն նման միւս հայ Մատենագիրները չարամտութեամբ չեն խանգարած հեթանոսական դարերու մնացորդ հաւատալիքները, այլ իբրեւ քրիստոնեայ՝ անոնց աւելորդ — աւելորդապաշտութիւն — ըլլալն ըմբռնած ու զանոնք անհետ ընել ջանացած են:

Որչափ որ ալ Եզնիկ մէկ կողմէն ժողովուրդին սնահաւատութիւնները հերքելու ջանադիր կ'ըլլայ, միւս կողմէն սակայն երբեմն երբեմն յայտ կը բերէ նմանօրինակ հաւատալիքներ, որոնք իր համոզումներն են:

2· Հանգամանք մը շատ կը դժուարցնէ Եզնիկի մասին ո եւ է ուսումնասիրութիւն — Եզնիկի բնագրէն մէկ ձեռագիր ունինք: Սակայն այս չէ միակ դժուարութիւնը· ուրիշ մը, նոյնքան ծանրակշիռ, կը բարդուի նախորդին վրայ· Եզնիկը ժողովրդական հաւատքի տեսակէտով ուսումնասիրելու աշխատանքը դրեթէ չէ կատարուած: Այս նիւթով զբաղող հայ եւ օտար հեղինակներ թէեւ Կողբացին իբր աղբիւր գործածած են այլ եւ այլ ժողովրդական-ազգային եւ օտար հաւատալիքներու ուսումնասիրութեան, սակայն անոնք քանի մը տեղիք յիշատակելէ անդին չեն անցած: Այդ հեղինակներու դասէն մասով մը բացառութիւն կը կազմեն թերեւս երկու գիտնականներ· E. Dulaurier, իր «Cosmogonie des Perse d'après Eznig» գրութեամբ[1] եւ Մ· Խոստիկեան իր «Ազգագրական նիւթեր Եզնիկի Եղծ Աղանդոցի մէջ» յօդուածով[2]: Առաջինը մեզի համար մեծ նշանակութիւն չունի, իսկ երկրորդը շատ վերիվերոյ կատարուած գործ մըն է:

3· Նկատմամբ Եզնիկի աղբիւրներուն — այս տեսակէտով — Ադոնց կը համարի, թէ «Հարցումն եւ Պատասխանիք սրբոյն Գրիգորի» գրութեան «պարտական է Եզնիկն մանաւանդ հայ Փոլկլորի վերաբերեալ թանկարժէք նիւթերը»[3]: Ամէն պարագայի մէջ բերուած ապացոյցները[4] Գրիգորի Հարցումներու առաջնութեան մասին՝ համոզիչ չեն: Ընդհակառակն՝ ինչպէս Եղիշէի նոյնպէս Գրիգորի անունով հասած Հարցումները կախում ունին Եզնիկէն:

4· Մեզի համար մեծ նշանակութիւն չունի այն պարագան, որ Եզնիկ շատ տեղ օտարազգի գրութիւններ օգտագործած ու նոյն իսկ երկայն հատուածներ թարգմանած է: Ա՛յն կտորները, որոնք իբր օտարի ապրանք ցոյց տրուած են, ամենեւին կապ չունին մեր խնդրին հետ· վասն զի հոն ազգային հաւատալիքներու հետքն անգամ չենք նշմարեր· անոնք առաւելապէս աստուածաբանական, փիլիսոփայական խորհրդածութիւններ եւ տրամաբանութիւններ են: Մինչ ա՛յն հատուածները, որոնք մեծ մասով հաւատալիքներու նուիրուած են, մեր առջեւը կը դնեն մեր նախահայրերու սին հաւատքն իր իսկական հարազատութեամբ, եւ ճիշդ ա՛յդ պարբերութիւններուն մէջն է, որ չեն նշմարուիր օտար աղբիւրներ: Ես չեմ կարծեր, որ ապագային հնարաւոր ըլլայ այս հատուածներուն մէջ օտար հետքեր ի յայտ բերել: Շատ լաւ կը բնորոշէ Mariès Եզնիկի դիրքը յարաբերութեամբ օտար աղբիւրներու: Բնական է յոյն աղբիւրները գլխաւոր տեղը կը գրաւեն, եւ յոյն Ս· Հայրերու մէջէն Մեթոդիոս, թերեւս նաեւ Յուստինոս (կամ Իրենէոս՞) մասնաւոր տեղ մը բռնած են: Որչափ ալ առատ ըլլան Եզնիկի փոխառութիւնները, սակայն եւ այնպէս մեր Ջատագովը զանոնք իր մտքին բովէն կ'անցնէ եւ անձնական ինքնուրոյնութեան դրոշմը կու տայ անոնց[5]: Թերեւս մէկը նոր աղբիւր մը գտնէ, որ խնդրական հատուածներուն հետ մեծ առնչութիւն եւ նմանութիւն ունենայ· բայց այնպիսին զգոյշ ըլլալու է, որ նմանութենէն՝ նոյնութիւն չհետեւցնէ: Ժողովրդական հաւատքի վերաբերող նիւթերո՛ւ մէջ

[1] Revue de l'Orient, t. V, Paris 1857, էջ 253—262:

[2] Ազգագրական Հանդէս, XXVI, էջ 137—147:

[3] Բազմավէպ, 1925, էջ 367:

[4] Այս մասին երկար գրած է L'Orient Chretien-ի մէջ, XXV (1925—1926), էջ 309—377: Հայրենիք Ամսագիր, Վեցերորդ տարի, 1928, Թ· 7, էջ 72—81:

[5] «Les sources grecques naturellement prédominent, et, parmis les Pères grecs, Méthode, et peut-être Justin (ou Irenée?), tous trois martyrs, occupent, en vertu d'un principe de choix énoncé par Eznik lui-même, une place à part.

Si larges que soient ses emprunts, nous avons vus, par le manière dont Eznik les utilise, qu'il sait rester original. Non seulement en intervertissant l'ordre de développement suivi par la source... ou en se livrant à mille petits jeux de démarquage au cours desquels... mais encore en faisant entrer, souvent de gré et habilement, quelquefois aussi un peu force et sans assez d'art, tous ces matériaux étrangers dans une construction dont le plan est bien à lui», *Le De Dèo d'Eznik*, Revue des Etudes arméniennes. Tome IV, fasc. 2, 1924, էջ 204 (կամ 92).

մանաւանդ՝ շատ անգամ նոյն իսկ ամէնէն տարանջատ ազգերն ապշեցուցիչ նմանութիւններ եւ նոյնութիւններ ցոյց կու տան. եւ սակայն հմուտ ժողովրդագէտ մը նոյնհետայն վերջնական վճիռներ չ'արձակեր: Այս մասին աւելի երկար խօսիլն աւելորդ է:

5. Եզնիկ սիրով կ'ընդգրկէ Եւեմերական դրութիւնը, որ իր քրիստոնէական ըմբռնումներուն հետ միանալով, մեծ նպաստ կրնար մատուցանել դիցաբանական անձնաւորութիւններն իբր մարդիկ ցոյց տալու: Եւեմերականութեան հիմնադիրն է Եւեմերոս յոյն փիլիսոփան, որ Քրիստոսէ երեք դար յառաջ ապրած է: Անոր հաստատած դրութեան համաձայն աստուածներն ի սկզբանէ հետէ աստուածներ չեն եղած, այլ թէ ժամանակաւ մարդիկ էին անոնք, միւս մարդիկներու պէս երկրի վրայ ապրած: Յաջորդ սերունդները զանոնք աստուածացուցած են՝ դրդուած անոնց բարձր մէկ յատկութենէն, որ սովորական մահկանացուներու վրայ չէր տեսնուիր: Այս դրութիւնը շատ ընդունելութիւն գտաւ ժամանակին, ո՛չ միայն յոյն փիլիսոփաներու քով, այլ նաեւ քրիստոնեայ Եկեղեցւոյ Ս. Հայրերէն, որոնց մէջ կրնանք դասել մեր Եզնիկն, Ագաթանգեղոսն եւ ուրիշներ: Եզնիկ երկու տեղ[6] կը գործածէ եւեմերականութիւնը. «Զի եւ Զրուանն իսկ մարդ լեալ է, այր մի քաջ առ Տիտանօքն. եւ որպէս սովոր են Յոյնք եւ Արիք եւ ամենայն ազգ հեթանոսաց՝ զքաջս առ դիւցազունս ունել, հայեցեալ ընդ այն քէշակարկատին Պարսից՝ թէ որովհետեւ մարդիկ աշխարհիս զնա առ աստուածս ունին, ես զերկնից իսկ եւ զերկրի եւ զամենայն արարածոց արարչութիւնն ի նմանէ կարծեցուցից»: Եւ դարձեալ. «Զի որ լաւ ոք եկեալ յաշխարհ՝ մեռանէր, վասն յիշատակի քաջութեանն զպատկերն երանգօք ի նկարու հանէին, եւ անտի ուսեալ տխմարաց՝ տակաւ ի պաշտօն առնոյին»:

6. Յարեւանցի ակնարկ մը միայն արդէն բաւական է նկատելու համար, որ սուրբգրական մեծ ազդեցութիւն կայ ո՛չ միայն Եզնիկի, այլ եւ հայ առհասարակ ամէն մատենագրի վրայ: Եւ այս հասկնալի երեւոյթ մըն է: Բայց թէ պէտք է միա՛յն այս ազդեցութեան վերագրել ամէն նմանութիւն, որ կայ հայ ու հրեայ հաւատքներու մէջ, այս անհաւանական կը թուի. շատ մը հաւատալիքներ որ կան հրեաներուն քով, գրեթէ նոյնութեամբ կային նաեւ սումերացիներու, հնդիկներու, պարսիկներու, փոքրասիական ժողովուրդներու, Փիւնիկեցիներու, Եգիպտացիներու քով: Եւ ինչո՞վ կարելի է հաստատել, թէ այդ ազգերը՝ միայն ու միայն՝ իրարու հետ սերտ յարաբերութեան մէջ մտնելով՝ իրարմէ ազդուած են: Աւելի հաւանական չէ՞, որ իրենց բարքերն ու հաւատքը հասարակաց աղբիւրէ մը բխեն: Մեր այս խօսքերը առաւելապէս Մակլէրի կը հային. մեծավաստակ գիտնականը ստոյգ կը համարի որ հայ ազգագրութեան (folklore) գլխաւոր տուեալներն իրանական աշխարհէն կը բխեն. նոյնպէս մեծ տեղ կու տայ սուրբ-գրական տուեալներու, շեշտելով՝ թէ «չկայ ազգ մը, որ հայերուն չափ տոգորուած ըլլայ սուրբ գրքով[7]»: Կը կարծեմ, թէ չափազանցութեան կը դիմէ Մակլէր: Եթէ յարգելի Ուսուցչապետը հայ հաւատալիքներու վերաբերող առաջին ամբողջութեամբ գնէ, եւ հայկականի ու հրէականի վերաբերող հաւատալիքները իրարմէ անջատէ ու այդպէս համեմատէ երկու նժարներու վրայ, պիտի տեսնէ, որ հրէականը կարծուածին չափ ծանրակշռութիւն պիտի չունենայ, ինչպէս նաեւ իրանականը:

7. Եթէ Եզնիկի մատեանն ուշի ուշով հետազօտենք եւ անոր ներկայացուցած հաւատալիքներու առաջին համապարփակ ակնարկով մ'ընդգրկենք, այլազան նիւթերու խայտաբղէտ պէսպիսութիւնն անմիջապէս պիտի զարնէ մեր աչքին: Հոն պիտի նշմարենք թէ հայ ռամիկը ի՛նչ ըմբռնումներ ունի

[6] Եզնկայ Կողբացւոյ Եղծ աղանդոց, Վենետիկ 1914, էջ 141 եւ 237: Եւեմերականութեան մասին հիմնական գաղափար կու տայ H. Pinard de la Boullaye, S. J. L'Étude comparée des Religions. Paris 1925, I, էջ 32, 37, 83, 96, 134, 148, 202, 204, 218, 277:

[7] S'il est incontestable que les principales données du folklore arménien découlent du monde iranien, il me semble qu'il convient également de faire la place très large aux données évangéliques. Il n'y a guère de peuple chrétien qui soit aussi imprégné de la Bible que les Arméniens. F. Macler, Trois conférences sur l'Arménie. Paris 1927, էջ 57. (Annales du Musée Guimet. Bibliothèque de vulgarisation, tome 46). Բոլորովին տարբեր E. Meyerի արտայայտութիւնն այս մասին. «Հին Հայաստանի բնիկ կրօնքն ամբողջապէս կորսուած է իրանական կրօնքին մէջ, այնպէս որ հնդիկեւրոպացի հայերու ազգային կրօնքին մասին գրեթէ ոչինչ գիտենք»: Geschichte des Altertums. Erster Band. Zweite Hälfte. Stuttgart und Berlin, 1921, էջ 706.

Տիեզերքի, Ոգիներու, Մարդու եւ Կենդանիներու մասին: Յետոյ այս չորս գլխաւոր նիւթերուն տակ գացող առարկաները պիտի տեսնենք. Տիեզերքը կը ներկայանայ երկու գլխաւոր մասերով. նախ կու գայ երկինքը, որ կը բովանդակէ հաստատութիւնն, աստղերն, արեւ եւ լուսինը, լոյսն եւ խաւարը, անդէնի աշխարհը: Տիեզերքի երկրորդ ուշագրաւ մասն է Երկիրը՝ իր ձեւովն եւ բներեւոյթներովը: Ոգիներու բաժնին տակ կ'երթան Բարի եւ Չար ոգիներն ու Ոգիներու պաշտօնեաները: Մարդու մասին այլ եւ այլ տեսակէտներով հաւատալիքներ կան Եզնիկի քով. այսպէս անոր հոգւոյն մասին, մարմնոյն, ճակատագրին, ոգիներու հետ ունեցած յարաբերութեան, մահուան, անդէնական կեանքի եւն վրայ:

Այս հաւատալիքներուն կից պիտի դնենք նաեւ օտար ազգերու դիցաբանութեան եւ հաւատքի մասին հաղորդուած տեղեկութիւններ. եւ մեր ծրագիրն արդէն կը պահանջէ, որ զանոնք ալ նկատողութեան առնենք: Բայց այդ օտար հաւատալիքներուն մասին շատ քիչ պիտի խօսինք. միայն ա՛յն կէտերուն վրայ պիտի ծանրանանք, որոնք մանաւոր ուշադրութեան եւ լուսաբանութեան կը կարօտին:

Բնականաբար երբ այս նիւթերն առանձին առանձին նկատողութեան առնենք՝ իւրաքանչիւրն իրե՛ն համապատասխան չափով պիտի ուսումնասիրուի: Ինչ ինչ նիւթերու մասին Եզնիկ արդէն կարճ եւ հարեւանցի գրած է, հետեւաբար մենք ալ անհրաժեշտ եղածէն աւելի չենք կրնար ծանրանալ անոնց վրայ. իսկ ուրիշ նիւթեր ալ աւելի մանրամասն կը ներկայանան մեզի, որով հարկ կ'ըլլայ զանոնք աւելի լայն չափով քննել: Եզնիկ հաստատութեան, աստղերու, արեւու եւ լուսնի, երկրի ձեւին ու դիրքին եւ ուրիշ ո՛չ կրօնական նիւթերու վրայ իրեն ժամանակակից ըմբռնումներն ունի, որոնք հաւատալիքներու հետ սերտ առնչութիւն ունին. անհրաժեշտ է, որ այդ ըմբռնումներն ալ նկատողութեան առնուին, ժողովրդական հաւատքի մասին լիակատար գաղափար մը կազմելու համար:

Այսչափ իբրեւ ընդհանուր դիտողութիւններ. այժմ միջամուխ ըլլանք մանրամասնութիւններուն:

## Ա.

## ՏԻԵԶԵՐՔ

### ա. Երկինք:

1. Հաստատութիւն: «(Աստուած) է պատճառ ամենայնի, որ ի լինելն եւ գոյանալն եկին ի չգոյէ եւ գոյէ. որպէս երկինք վերինք եւ որ ինչ յերկինս, եւ երկինք երեւելիք որ ի ջուրց»[8] եւն: Հոս Եզնիկ երկու երկինքներու զանազանութիւն կ'ընէ, մին վերին երկինքն է, իսկ միւսը երեւելին: Այլուր[9] Պօղոս Առաքեալին երեք երկինքները բացատրել ուզելով, կ'ըսէ. «Սկսիր յառաջնմէն եւ էջ յերկրորդն եւ հաս յերրորդ օդդ՝ որ ի գրոց երկին կոչի, եւ զտանես զոր ինչ երանելին Պաւղոս ասէ». այսինքն կայ առաջին երկինք մը, որ ամենաբարձր երկինքն է. ասոր կը յաջորդէ երկրորդ մը եւ յետոյ երրորդ մը՝ տեսանելի երկնակամարն ուր կայ օդը: Այս երեք երկինքներն ըստ Եզնիկի մէկ ամբողջութեան, մէկ երկնքի՝ երեք մասերն են. «Յափշտակեցաւ Պաւղոս ... մինչեւ ցերրորդ ինչ մասն ի բազում մասանց միոյ երկնից»[10]: Ուստի Մարկիոնի ընդունած երեք երկինքները կը մերժէ[11]. «երրորդ երկինս ասել ուստի՞ իցէ նմա. զի Մովսէս երկուս երկինս ասէ: Որպէս յամենայնի մոլորեցան հերձուածօղք, նոյնպէս եւ յայսմ, զի ոմն տասն երկինս ասէ, ոմն եւթն եւ Մարկիոն երիս»:

Յայտնի է որ հոս առաւելապէս օտար ըմբռնումներ կը գերակշռեն: Սակայն «Երկինք» բառն արդէն շատ պերճախօս է. վասն զի անոր անեզական ձեւը բազմաթիւ երկինքներ կ'ենթադրէ[12]: Եւ արդէն հայ ուրիշ հեղինակներ եւ արդի հայ ժողովրդական հաւատքը բազմաթիւ զուգակշիռներ կ'ընձեռեն մեզի: Նախ համեմատութեան առնենք մեր ժողովրդական ըմբռնումները, վասն զի ռամկին քով աւելի հարազատ կը մնան վաղնջական դարերու հաւատալիքները: Ջաւախեցիներու[13] հաւատքով՝ «երբ Աստուած բաժնեց երկինքն ու երկիրը՝ ջրի մի մասն երկնքում

---

[8] Եզնկայ Կողբացւոյ Եղծ աղանդոց, Վենետիկ 1914, էջ 9:
[9] Անդ, էջ 301:
[10] Անդ, էջ 299:
[11] Անդ, էջ 298:
[12] Դոկտ. Հ. Աղեքսանդր Մատիկեան, Կրօնի ծագումն եւ դիցաբանութիւն, Վիեննա 1920 (Ազգային Մատենադարան Ձէ), էջ 247:
[13] Ազգագրական Հանդէս, Ա, էջ 347:

միաց, միացածը կազմեցին հետեւեալ չորս գետերը. Եփրատ, Կուր, Արաքս եւ Սեւ ջուր: Երկինքը եօթը չերտ է. առաջին չերտն ամպ է, միւսները ջուր»: Համշէնցիները[14] կը համարին, թէ Քրիստոս երկինք համբառնալու ժամանակ ինը օր ճամբորդած է, իւրաքանչիւր օր մէկ հրեշտակի մօտ մնալով, վասն զի իւրաքանչիւր երկնքի վրայ մէկ հրեշտակ պետ է: Ալաշկերտցիները եօթը երկինքներ կ'ընդունին. առաջին յարկը կամ աստիճանը երկրի մակերեւոյթն է. երկրորդն՝ ամպեր. երրորդը՝ լուսին. չորրորդն՝ արեգակն. հինգերորդն՝ աստղներ. վեցերորդը՝ հրեշտակներու եւ սուրբերու կայանը. եօթներորդն՝ Աստուծոյ աթոռը: Նոր-Բայազէտցիներու[15] համաձայն եօթնապատիկ է երկինք, եւ իւրաքանչիւր երկինք ա՛յնչափ հեռու է իր քովինէն, որչափ երկիրն հեռու է երկնակամարէն: — Վարդան վարդապետ[16] կը հաւաստէ, որ «երեք կամարք են մի քան զմի վերագոյն. հրեղէն եւ ջրեղէն՝ ի վայր քան զնա եւ օդեղէն՝ որ է հաստատութիւնդ»: — Հնդիկներու[17] երկինքները բազմաթիւ են. Մերու լեռան վրայ կը բարձրանան անոնք: Նախ կու գան վեց աստուածային կոչուած երկինքները. յետոյ «ձեւի աշխարհի» տասնուվեց երկինքները, որոնց վրայ դեռ կը բարձրանան չորս հատ ալ: Պարսիկները[18] երկու երկինք կ'ընդունին. մին ներքին՝ միւսն արտաքին երկինք անունով: Ներքինը — âsmân — թափանցիկ, կապոյտ քարերէ շինուած պատնէշ կամ թումբ մըն է, որպէս զի չար ոգիները բարի ոգիներու սահմանը չանցնին, որ կը բաժնուէր այդ թումբով: Արտաքին երկինքը (thwâsha) կը պարփակէ նախորդ երկինքն ու տիեզերքը. անոր վրայ հաստատուած են աստղները եւ միշտ կը դառնայ: Մաս'ուտի[19] արաբ մատենագիրը ինը

[14] Անդ, Զ, էջ 158:
[15] Անդ, XVII, էջ 94:
[16] Վարդան վարդապետի Պատմութիւն, Վենետիկ 1862, էջ 2—3:
[17] Orelli, Allgemeine Religionsgeschichte, II, 1913, էջ 8:
[18] Spiegel, Eranische Altertumskunde, Leipzig 1877, I, էջ 188:
[19] Անդ, էջ 206: Իսլամ ժողովրդական հաւատքը նաեւ եօթը երկինքներու վրայ կը խօսի: Առաջինն, որ մեր երկրին ամէնէն աւելի մօտ է, կանանչ ջրէ կը բաղկանայ. երկրորդը՝ ջինջ ջրէ. երրորդը՝ զմրուխտէ. չորրորդ երկինքը ոսկի է. հինգերերդը յակինթ. վեցերորդն՝ ամպ. եօթներորդը՝ կրակ. Guer, Moeurs et usages des Turcs, leur religion, leur gouvernement etc. Paris 1747, I. vol., էջ 98:

երկինք կ'ընդունի: Կիւրեղ Երուսաղէմացին[20] երեք երկինքներ կը զանազանէ, որոնք հրեշտակներու բնակարաններն են: Ափրիկէի Կաբիլները[21] եօթը երկինք կ'ընդունին, իսկ Մեքսիկացիներուն[22] հաւատքով ինը երկինք կայ: Բորնէօի[23] բնիկները եօթը երկինք ունին. անոնց դրացիներէն ոմանք[24] հետեւեալ զանազանութիւնն կ'ընեն. երկրէն սկսելով՝ ամէնէն վերի՝ այսինքն եօթներորդ երկնքին մէջ կը բնակի գերագոյն աստուածը, ինչպէս հայ ժողովրդական հաւատքն ալ կ'ընդունի. վեցերորդին մէջ կը կենայ «բոցեղէն երկնակոյսը», որ լուսոյ տիրուհի կ'ըսուի եւ գերագոյնի պատգամաւոր դուստրն է. հինգերորդին մէջ՝ հունձքի եւ արջառի աստուածը. չորրորդին մէջ՝ բժշկութեան աստուածուհին. երրորդին մէջ՝ «շնչատու» (մարդկան կենդանութիւն տուող) աստուածը. երկրորդին մէջ կը գտնուի շղթայակապ մէկը, որ մեր Արտաւազդին կը համապատասխանէ. եւ առաջինին մէջ՝ սատանայի կինը, որ մարդիկը չարութեան կը գրգռէ:

2. Աստղներ: «Քաղդեայքն[25] աստեղանշմարք ... զծննդոց պատճառս եւ զմահուանց՝ յաստեղաց իբրեւ ի կենդանեաց դնեն: Որպէս թէ յորժամ ծնանիցին, անդէն եւ մահուանքն իւրաքանչիւր ուրուք անվրէպ սահմանիցին. եւ ըստ այն ոչ յառաջել ումեք մեռանել հնար իցէ, եւ ոչ յամենալ». ուստի ծննդեան վայրկենին՝ աստղները կը վճռեն թէ ե՛րբ պիտի մեռնի երեխան:

«Եւ դարձեալ[26] թէ յաստեղաց էին պատճառք ծննդոց, ընդէ՞ր ի հնդիկս ոչ ոք երբեք սպիտակ ծնաւ, եւ ոչ յայլ աշխարհս այնպիսի ինչ երեւակ. մի թէ ա՞նդր միայն ոչ եհաս աստղն սպիտակարար, եւ ոչ յայլ աշխարհս աստղն սեւագործ»:

«Դարձեալ բախտաւորութեանց եւ չուառութեանց՝ զաստեղսն դնեն պատճառս, որպէս թէ աստեղատունք ինչ իցեն եւ ըստ դիպելոյ պատճառաւորաց աստեղացն յաստեղատունսն նոյնպիսիք եւ ծնունդքն լինիցին»:

[20] Կոչումն ընծայութեան, Վիեննա 1832, էջ 188:
[21] Publication d'hommage offerte au P. W. Schmidt, Vienne 1928, էջ 298.
[22] Orelli, անդ, II, էջ 417:
[23] P. W. Schmidt, Grundlinien einer Vergleichung der Religionen und Mythologien der austronesischen Völker (Denkschr. der kais. Akad. der Wissensch. in Wien. Phil.-histor. Klasse, Bd. LIII, III. Abhandl.), 1910, էջ 17—18
[24] Անդ, էջ 54:
[25] Անդ, էջ 178:
[26] Անդ, էջ 179:

«Աստեղք պատճառաւորք» փոքրիկ մեկնութեան մը կը կարօտի. ինչպէս ամբողջ խօսքէն եւ յետագայ հատուածէն շատ լաւ կարելի է տեսնել, «պատճառաւոր» բառը՝ «բախտ կամ ճակատագիր որոշող, ճակատագրի պատճառ եղող» իմաստն ունի: Եզնիկի[27] քով «պատճառաւոր» նաեւ «արարած, եղած, ստեղծուած» իմաստով կը գործածուի:

«Մինչդեռ[28] առիւծն, ասեն, յաստեղատանն իցէ՝ եւ ծնանիցի ոք, թագաւոր լինելոց է. եւ մինչդեռ եզն է եւ ծնանիցի ոք, հզօր եւ բարենչան գալոց է. եւ մինչդեռ խոյն՝ եւ ծնանիցի ոք, մեծատուն լինելոց է, եւ որպէս նայն թաւ եւ ասուեղ է. եւ յորժամ կարիճն է եւ ծնանիցի ոք չար եւ մեղանչական լինելոց է: Եւ այլքն եւս ազգի ազգի իրաց պատճառք լինին: Որպէս թէ յորժամ Կռոնոսն յաստեղատունն մտանիցէ, թագաւոր մեռանի»:

Եզնիկ կ'ուզէ հերքել[29] այս հաւատքն, առարկելով թէ «չկենդանիքն զի՞րդ կարիցեն կենդանեացն պատճառ ծննդեան լինել»: Բայց աստեղանչմար քաւդեաններն ու ռամիկը կը պատասխանեն. «Այլ թէ չէին կենդանիք, ասեն, եւ ոչ գնայունք էին. բայց զի գնան յայտ է՝ թէ կենդանիք են»:

Ժողովուրդը չի՛ հաւատար[30] Եզնիկի այն խօսքին թէ «որպէս թագաւորութեանն չէ աստղն պատճառ, նոյնպէս եւ ոչ զօրութեան, եւ ոչ մեծատուն առնելոյ»:

«Նոյնպէս[31] եւ ոչ ի լուսաւորսն շնչաւորութիւն ինչ բանաւոր է, այլ բնական եւ խաղացական շարժմունք. ուստի ոմանք եւ հրեշտակս վարիչս եդին նոցա»:

Ամփոփելով աստղներու մասին հաղորդուածները, անոնք մարդու ծնունդն ու մահը կ'որոշեն. կ'ազդեն մարդուն մարմնոյն, բախտաւորութեան ու չուառութեան վրայ. կը շնորհեն թագաւորութիւն, զօրութիւն, գեղեցկութիւն, ինչք եւ երբեմն չար ու վնասակար յատկութիւններ: Եւ այս ամէնը կրնան ընել աստղները, վասն զի կ'ապրին եւ գերմարդկային կենդանի էակներ են:

Ի՞նչ է այս հաւատքին հիմն ու պատճառը, որ գրեթէ ամբողջ երկրի վրայ մարդկութեան հոգւոյն մէջ հսկայական նուաճում մը գործեր է: Աստղներու մասին եղած հաւատալիքներ՝ շատ մեծ տեղ կը գրաւեն ազգերու կրօնքին ու դիցաբանութեան մէջ: Այն աչքառու նմանութիւնները, որ նոյն իսկ ամենահեռաւոր ազգերու մէջ կան, պայմանաւորուած են բազմապիսի ազդակներէ, որոնց մէջ գլխաւոր տեղը կը գրաւեն հոգեխօսական ու բնագիտական ազդակներ: Երբ անգամ մը ռամկին մտքին մէջ տեղաւորուի ա՛յն ըմբռնումը, թէ իրենց նախնիները մեռնելէ յետոյ աստղներու մէջ բնակելու կ'երթան եւ կամ նոյն իսկ աստղներն անոնց հոգիներն են, որոնք մութ գիշերներու ընթացքին անթարթ աչքերով կը նային իրենց զաւակներուն վրայ ու անոնց բախտին վրայ կը հսկեն, այնուհետեւ շատ բան չի՛ մնար այս հաւատքն աւելի զարգացնելու եւ ըսելու թէ այդ աստղները կ'որոշեն իրենց բախտը:

Այս հոգեխօսական պարագային վրայ կ'աւելնայ բնագիտական փորձառութիւնը: Բնութեան մէջ ապրող ժողովուրդին աչքերէն շատ քիչ բան կը վրիպի՝ բնութեան երեւոյթներէն: Ամենահին ժամանակներուն իսկ, ամէն ժողովուրդի մէջ կար դաս մը, որ աստեղագիտութեամբ կը զբաղէր: Որչափ որ ալ անոնք թիւր գաղափարներ կազմած ըլլային երկնային դրութիւններու մասին, անոնք ուշադիր եղած պիտի ըլլային, որ աստղները՝ եւ մանաւանդ արեւն ու լուսինը մասնաւոր ազդեցութիւն ունին ամբողջ բնութեան ու մարդուն վրայ: Այսպէս կ'ընդունի քսաներորդ դարու գիտութիւնը եւ միայն անտեղեակները կը տարակուսեն այս մասին: Հոս յառաջ կ'ուզեմ բերել մեր արդի բժիշկներէն մէկուն՝ Դոկտ. Գրիգորեանի խօսքերը[32]. «Եթէ տակաւին գիտնականապէս չենք կրնար հաստատել ու փաստել աստեղային ուժերու ազդեցութեան տեսակն ու տարողութիւնը մարդուս վրայ, — թէեւ արեւուն ազդեցութիւնն ամենօրեայ փաստ մըն է, — բայց վստահաբար կրնանք ըսել, որ անժխտելի ու տեւական կապ մը կայ տիեզերական ուժերու եւ կեանքի ու մահուան կշռոյթին (rythme) միջեւ: Արդ եթէ ընդունինք ճակատագրի գոյութիւնն իր նորագոյն ըմբռնումով, ա՛յն՝ որ մարդու մը անհատա-

---

[27] Անդ, էջ 251:
[28] Անդ, էջ 180. համեմատէ նաեւ էջ 184:
[29] Անդ, էջ 182:
[30] Անդ, էջ 185:
[31] Անդ, էջ 283:

[32] Թէոդիկ, Պարիս 1929, էջ 36. համեմատէ նաեւ Գիտութիւն եւ Գիտելիք, 1928, Թիւ 12, էջ 185—187. 1929, Թիւ 13, էջ 226—228:

*կանութիւնը, խառնուածքն ու նկարագիրը, հետեւաբար կեանքի մէջ իր ընթացքը կախում ունին իր կազմուածքէն՝ որ ծնած օրէն իսկ եւ աւելի առաջ, արդէն հաստատուն ու գրեթէ անփոփոխելի է իր* ընդհանուր գիծերուն մէջ, *եւ երբ գիտութիւնը գայ հաստատել աստեղային ուժերու ուղղակի ազդեցութիւնը մարդուս կազմուածքին վրայ — մանաւանդ կազմաւորութեան շրջանին, — միաժամանակ հաստատուած կ'ըլլայ աստղերու ազդեցութիւնը մարդկային ճակատագրին վրայ: ... Պէտք է հիմանալ, որ՝ առանց այն գիտական հրաշալի միջոցներուն, զորս այսօր մեր տրամադրութեան տակ ունինք, մեր նախնիք տիեզերական շատ մը մեծամեծ խորհուրդներու յայտնատեսութիւնն են ունեցեր, եւ անոնց ցնորական տեսութիւնները յաճախ դարձեր յետագայի սովորական իրականութիւնը»:*

*Հայ ժողովրդեան կարծիքով*[33] *ամէն մարդ աստղ մ'ունի. երբ անոր վախճանը գայ, այդ աստղը կ'իյնայ եւ մարդը* 40 *օր յետոյ կը մեռնի: «Բոլոր աստղերն երկու տեսակ են լինում, բարի եւ չար: Բարի աստղի տակ ծնածը՝ երջանիկ, չարին տակ ծնողը դժբախտ է լինում: Աստղերը կարող են զօրութիւն, իմաստութիւն տալ մարդկան*[34]*»: Այս հաւատքը կայ Ջաւախքի, Վարանդայի, Համշէնի, Գանձակի, Տարօնի եւն մէջ: Բորչալուցիներու համաձայն ամէն նորածինի համար նոր աստղ մը կը ստեղծուի: «Թլուատ Դաւիթ*[35]*» հայ ժողովրդական դիւցազներգութեան մէջ՝ Մըսրայ Մելիքի մայրը իր որդւոյն կ'ըսէ՝ զայն Սասնոյ դիւցազնին դէմ կռուելէ ետ կեցնել ուզելով.*

*«Մելիք, մի' էրթայ էն կօչախի վերայ.*
*Մէկ էրազ իմ տիհիր՝*
*Էրազըմի զահահուրիմ իմ.*
*Գիշեր էրազի մէջ որ տիհայ՝*
*Սասընայ աստղայ լիւս-պայծառ էր,*
*Մըսրայ աստղայ մութ-խաւար էր*[36]*»:*

*Ջէնով Օհան*[37]*, նոյն դիւցազներգութեան ուրիշ մէկ հերոսը, որ աստղագուշակ է, «իրիշկից, Դաւթի աստղ տեսաւ՝ նվազ էր, խիւանդ էր», ուստի կ'եզրակացնէ թէ «Դաւիթ նեղ տեղ ի ինկի»: Շնորհալի*[38] *իր «Յաղագս երկնից» գործին մէջ կը նկարագրէ երկինքն ու եօթը մոլորակներու համար կ'ըսէ.*

*«Ոմանց բարի ասեն գիտողք եւ խոստանան,*
*Այլոց զչար թէ լինիցի խօսին զբան.*
*Է զի կատարի, է զի սխալող բարբառեցան»:*

*Սրուանձտեանց*[39] *իր «Մանանային մէջ յառաջ կը բերէ սա կտորները. «Թէ որ մէկը կը ծնանի այն վայրկենին, որ Աղեղնաւորին Առաջին աստղը Լուսնթագին հետ մէկ տեղ հորիզոնէն վեր կ'ելլէ, դիւցազն ու թագաւոր լինի նա: Թէ որ մէկը Խեցգետին կենդանակերպին մէջ ծնանի, վատ լինի. ինչ բանի ձեռք զարնէ, ետ մնայ: Ով որ Խոյին մէջ ծնանի, մեծատուն լինի: Ով որ առիւծին մէջ ծնանի, կտրիճ եւ իշխան լինի, նաեւ կռուող եւ բարկացող: Ով որ Կշիռին մէջ ծնանի, արդար եւ բարի լինի: Ով որ Այծեղջ(իւր)ին Արեւուն հետ հորիզոնէն վեր ելլելու ատենը ծնանի, անոր բախտ հետզհետէ մեծնայ եւ բարձրանայ: Երջանիկ է այն ժողովուրդ, որոյ թագաւորն ծներ է Կշիռ կենդանակերպին մէջ: Վա՛յ այն ժողովրդեան, որոյ թագաւորը ծներ է Կարիճ չար կենդանակերպին մէջ»: Ինչպէս կը տեսնուի այս հաւատքը Եգ-*

---

[33] Ազգագրական Հանդէս, *Ա*, 308, 348· *Բ*, 219· **Զ**, 34, 346· IX, 269—271· X, 166· XVII, 95 *եւն.* Abeghian, Der armenische Volksglaube. Leipzig 1899, *էջ* 25: Ա· Տ· Կ· Գալփաքեան, Զօմախլու, *Նիւ Եորք*, 1930, *էջ* 36:

[34] *«Գիւմիւրդեցի մի հովիւ մրսում է. տանում են տուն. ճանապարհին մի քարի փոսի մէջ հաւաքուած ջրից խմում է: Գիշերը երազում յայտնում են, թէ դու սրբացար, որովհետեւ խմեցիր այն ջուրը, որի մէջ զարկել էր աստղը: Մի եւ նոյն ժամանակ արգելում են նրան ամուսնանալ: Սա ժամկոչ է դառնում եւ ամէն ինչ գուշակում: Մինչ իսկ պառկում է գերեզմանների մօտ եւ իմանում, թէ ննջեցեալները քրիստոնեա՞յ են եղած թէ կռապաշտ»:* Ազգագրական Հանդէս, *Ա*, *էջ* 348:

[35] *Անդ*, **Զ**, *էջ* 174:

[36] *Մելի՛ք, մի երթար այդ քաջին դէմ.*
*Մէկ երազ եմ տեսեր,*
*Երազիս մէջ զարհուրեր եմ.*
*Գիշեր երազի մէջ որ տեսայ՝*
*Սասունի աստղը լոյս պայծառ էր,*
*Մըսրի աստղը մութ խաւար էր:*

[37] *Անդ*, *էջ* 190—191:

[38] Բանք Չափաւ· Յաղագս Երկնից· *Վենետիկ* 1830, *էջ* 283:

[39] Մանանայ, *Կ· Պոլիս* 1876, *էջ* 337—338: *Ինչպէս որ այս տեղիքէն յայտնի է, առիւծը զօրութեան, իշխանութեան եւ բարկութեան խորհրդանիշն է: «Երբ արեւն իր ընթացքն առիւծին մէջէն կ'ընէ, այդ միջոցին աւելի ուժգին ազդեցութիւն մը ունի. եւ այս անոր համար չէ՛, որ արեւն այն ժամանակ մասնաւոր մոգական ոյժ մը կը սփռէ..., այլ որովհետեւ արեւը առիւծի քով եղած ատեն շատ ուղղաձիգ կը նետէ իր ճառագայթները երկրի վրայ ու ասով իր բնական ազդեցութիւնը գերազանց ատիճանով կը ներգործէ:* Jakob Aebly, Astrologie als kosmische Symbolik und Periodik. «Der Leuchter», Darmstadt, IX. Band (1930—1931), I. Heft, *էջ* 127:

նիկի ներկայացուցածին հետ գրեթէ նոյն է․ Խոյը հարստութիւն կը շնորհէ, առիւծը՝ իշխանութիւն եւ թագաւորութիւն, իսկ կարիճը՝ դժբախտութիւն ու չարիք։

Մի եւ նոյն հաւատալիքները գրեթէ նոյնութեամբ կը գտնենք նաեւ ուրիշ ազգերու քով։ Աւեստայի[40] համաձայն, ամէն բարի եւ չար բան, որ մարդկան եւ միւս արարածներուն կը հանդիպին, 12 ախտարներէ եւ 7 ապախտարներէն յառաջ կու գան (12 կենդանակերպներն ու 7 մոլորակները)։ 12 ախտարները Որմզդի կուսակցութեան կը վերաբերին եւ բարի արդիւնքներ յառաջ կը բերեն, իսկ ապախտարներն Ահրիմանի արբանեակներն են եւ միայն չարիք յառաջ բերելու եռեւէ կ'ըլլան։ Դիոդոր Սիկիլիացի[41] քաղդէացիներու մասին կը գրէ՝ թէ կը հաւատան, որ մոլորակներու ընթացքին մէջ 30 աստղներ կան, իբր խորհրդատուներ․ անոնց կէսը դէպ ի երկիր կը նային․ միւսները երկրի խորքը (սանդարամետը) կը նկատեն, եւ ասով հոն եղածները կը տեսնեն ու անոր համաձայն որոշումներ կ'ընեն։ Բաց աստի կան 24 աստղներ, որոնց 12ը կենդանի մարդկան վրայ կը հսկեն եւ 12ը մեռելներուն վրայ ու դատնոնք կը դատեն։ Վիրգիլիոսի[42] Մշակականքին մէջ կը կարդանք թէ մարդիկ չեն մեռնիր, այլ կը թռչին կ'երթան աստղներու մէջ կը բնակին։ Հռոմայեցիներու աստղապաշտութեան մասին Ս․ Օգոստինոս երկար գլուխներ նուիրած է իր «վասն Քաղաքին Աստուծոյ»[43] երկին մէջ։ Հռովմայեցիներու համաձայն, աստղները ո՛չ միայն մարդիկներու բախտին ու ճակատագրին վրայ որոշիչ ազդեցութիւն ունին, այլ նաեւ անոնց դիրքէն ու երեւոյթներէն կարելի է իմանալ, թէ ծնանելիք կենդանի մը ինչպիսի՛ պիտի ըլլայ, արդեօք սարբեր, արօրաձիգ, կառաձիգ եւն։

Աստեղահմայութեան բուն հայրենիքը Եփրատ—Տիգրիսի հովիտն է։ Եւ այս պարագան արդէն մեծապէս ազդած է, որ աստրաբաբելական քաւդէութիւնը ամեհի հոսանքով խուժէ երկրէն դուրս եւ ողողէ դրացի աշխարհները։ Անուրանալի է, որ հայ ազգը ո՛չ միայն այս տեսակէտով, այլ նաեւ ուրիշ քաղաքակրթական մեծ ազդեցութիւններու են-

թարկուած է իր այս քաղաքակիրթ դրացիներէն։ Եւ հայ ազգը մին է այն սակաւ ազգերէն, որ իր վաղնջականութեան պատճառաւ՝ հնադարեան քաղաքակրթութեան մը մնացորդները հասցուցած է մեզի․ եւ այդ մնացորդներուն մէկ մասը՝ մեռած ազգի մը, ասորա—բաբելացիներու, սեպհականութիւնն է։ Ինչ որ Կիւմոն իր մեծ հեղինակութեամբ ասորիներու մասին կը գրէ, նոյնը նաեւ հայերու մասին կրնար ըսել․ «Քաղդէական աշխարհախօսութիւնը (cosmologie), որ ամէն տարր կ'աստուածացնէ, եւ մանաւանդ աստղներուն գերազանց ազդեցութիւն մը կը վերագրէ, կը տիրապետէ ամբողջ ասորական ընտրակրօնքի (Syncretismus) վրայ․ Տիեզերքն հսկայ գործարան մը կը նկատէ, որուն իւրաքանչիւր մասը, իրարու հետ սերտօրէն կապուած, կ'ազդէ ու կը հակազդէ իրարու վրայ։ Ուստի աստուածութիւնը կրնայ — ինչպէս հին սեմականները կը հաւատային — ջուրի, չանթի, քարի կամ բուսականութեան մէջ մարմնացած մտածուիլ։ Բայց ամենազօրեղ դիքերն համաստեղութիւններն ու մոլորակներն են, որոնք ժամանակի եւ իրերու ընթացքը կը վարեն»։

*(Շարունակելի։)* Հ. Ա. ԳԱՐԱՄԱՆԼԵԱՆ



# ՆԻՒԹԵՐ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԱՅ ԱԶԳԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

Հաւաքեց

ԿՈՍՏԱՆԴԻՆ ՄԵԼԻՔ—ՇԱՀՆԱԶԱՐԵԱՆ

## ՏՆԱՅԻՆ ԲԺՇԿՈՒԹԻՒՆ

### ա․ Աչքացաւի համար։

1․ Ջուն կոտրում են սպիտակուցը միջից հանում, իսկ դեղնուցը մէջը թողնելով բամբակով ծածկում եւ այնքան հարում, որ նրա իւղը պատում է բամբակին, որը դնում են աչքի վրայ։

2․ Նոր մորթած ոչխարի սպիտակ թոքի (փափաչը) մի կտոր դնում են աչքին եւ պահում որ արիւնը քաշի։

---

[40] Spiegel, անդ, II, էջ 74։
[41] Orelli, անդ, I, էջ 221։
[42] Georgica, IV.
[43] V, 1—9։

[44] Franz Cumont. Die orientatischen Religionen im römischen Heidentum. Nach der vierten französischen Auflage, unter Zugrundelegung der Übersetzung Gehrichs bearbeitet von Dr. B. A. Burckhardt-Brandenburg, 3. Auflage, Leipzig und Berlin, 1931, էջ 122.

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԸ ԵԶՆԻԿԻ ՔՈՎ

(Շարունակութիւն:)

3. Արեւ: *Այլուր*[45] *մասնաւոր ուսումնասիրութեան առարկայ ըրած էինք արդէն, թէ մեր ժողովրդական հաւատքին մէջ ի՛նչ տեղ կը բռնէ արեւը. ուր նաեւ Եզնիկի մատեանէն քանի մը տեղիքներ յառաջ բերած էինք: Այս հատուածին մէջ ո՛չ միայն այդ տեղիքները նկատողութեան կ'առնենք, այլ նաեւ կը համախմբենք Կողբացւոյն բոլոր հաղորդածները նոյն նիւթի մասին, կարելի եղածին չափ կրկնութիւններէ խոյս տալով:*

ա. *«Եւ յէկլեսիաստէսն*[46] *գրեալ է՝ թէ «Ծագէ արեգակն եւ մտանէ արեգակն եւ ի տեղի իւր ձգի: Ինքն ծագեալ անդ՝ գնայ առ հարաւով եւ պատի առ հիւսիսաւ»:* Զի ցուցցէ թէ ցերեկ առ հարաւակողմամբ գնայ ընդ արեւմուտս եւ զցայգ առ հիւսիսեաւ դառնայ յառեւելս՝ ընդ լերանց ստորոտովք, որպէս ասեն իմաստունքն» (218):

*Շատ հետաքրքրական պատկեր է՝ որ Եզնիկ քանի մը դրչի հարուածով կը ստուերագծէ. կարճ խօսքով արեւու առասպելական ծիրը կը նկարէ մեզի, որ հետեւեալն է. Արեւը ծագելէն վերջ՝ դէպ ի հարաւ կ'ընթանայ եւ մայրամուտքի ժամանակ արդէն արեւելքն արեւմուտքի կցող կիսաբոլոր ծիր մը կը ձգէ իր ետեւը երկնքի վրայ: Այդ կիսաբոլորին տակ կը տարածուի մեր երկիրը: Մայրամուտքէն յետոյ արեւն իր ընթացքը կը շարունակէ՝ հիւսիսային կողմը գտնուող լեռներու ստորոտէն անցնելով: Մինչ արեւն այդ բարձրաբերձ լեռներուն ետեւէն կ'ընթանայ՝ բնական է թէ չի կրնար երկիրը լուսաւորել, որ իրմէ անջատուած է այդ հիւսիսային լեռներով եւ անոնց ստուերին տակ միացած (գիշեր): Այս լեռներուն ետեւէն ալ արեւը կիսաբոլոր ծիր մը կը ձգէ, եւ արշալոյսին՝ լեռներուն արեւելեան ծայրը կը հասնի ու իր առաջին ճառագայթները երկիր կ'առաքէ:*

*Անանիա Շիրակացւոյ հետեւեալ հատուածը ո՛չ միայն կը լուսաբանէ Եզնիկի գծած պատկերը, այլ եւ արեւու պատմնւոյ կերպարանք կու տայ, ինչ որ կը յիշեցնէ Գողթան ծանօթ հին երգը: «Եւ արդ մի՛ զիս ըմբռնեսջիք, սիրելիք, զիտէ ծածկագէտն զի ո՛չ ստեմ. մինչդեռ էի առաւօտին յաղօթսն ի վկայարանին Սրբոյն Եզնիկեայ եւ միտքս յայս խորհուրդս ծփէին (թէ արդեօք արեւը մար մտնելէն յետոյ ի՛նչ աշխարհ կը լուսաւորէ), քուն էառ զիս, եւ տեսանէի որպէս թէ արեգակն ի ծագելն խոնարհէր յերկիր իջանել, եւ ես յառաջս ընթանայի, եւ ի գիրկս ընդունէի զնա, եւ նա էր պատանի անմօրուս ոսկեղիտակ (°), եւ շրթունք բերանոյ նորա որպէս թէ ոսկւով լինէր օծեալ, եւ ինքն սպիտակս եւ փայլունս ունէր համդերձս, եւ լոյս սաստիկ ելանէր ի բերանոյ նորա: Եւ ես ասացի ցնա թէ ի վաղնջուց ցանկացեալ էի ի քէն լսել բան. արդ ասէ՛ պատմեա՛ ինձ, թէ յորժամ ծածկիս ի մէնջ, ո՞ւմ տաս լոյս: … Եւ նա ասէ. … Լերանց եւ անփայլից ձորոց եւ անձաւաց անկենդանեաց տամ լոյս»*[47]*:*

*Յայտնի է որ Հայաստանի պէս լեռնային աշխարհ մը մեծապէս ազդած է բնութենական այս հայեացքին վրայ: Ազգային եւ օտար նման շատ մ'ըմբռնումներու կը հանդիպինք, որոնք արեւն ու անոր ընթացքը լեռներու հետ կը կապեն:* Spiegel*ի*[48] *վկայութեան համաձայն հին Իրանեանները արեւու ելլելն* (Sonnenaufgang) *եւ խոնարհիլը* (Sonnenuntergang) *կը բացատրէին, ըսելով թէ արեւն ու աստղերը Տիրէ ըսուած լեռնագագաթին շուրջը կը դառնան: Այս հայեացքը հասկնալի կը դառնայ, երբ զայն Եզնիկի յիշուած պատկերին վրայէն ըմբռնենք. արեւն առաւօտ այդ լեռներուն ետեւէն* կ'ելլէ—*արեւ*ելք*, եւ իրիկունն անոնց ետեւ կը* մտնէ—*արեւ*մուտք: Մուտք *եւ* ելք *բառերն արդէն կը նշանակեն երկնքի կամ հորիզոնի ա՛յն կողմը, ուր արեւը վերջալոյսին անյայտ կ'ըլլայ եւ կամ արշալոյսին կը ծագի*[49]*:*

*Աւելորդ չենք համարիր յիշելու հոս ժո–*

---

[45] *Հ. Ա. Գարամանլեան, Արեւը հայ ժողովրդական հաւատքին մէջ:* Հանդ. Ամս., 1929, էջ 634—650, 752—759:

[46] *Ժողովող, Ա, 5—6: Սուրբ Գրքի մէջ քիչ մը տարբեր է նոյն խօսքը. «Ծագէ արեգակն եւ մտանէ արեգակն եւ ի տեղի իւր ձգի: Ի ծագելն իւրում ելանէ ընդ հարաւ, եւ պատի ընդ հիւսիսիւ, պատելով պատի», որ յունարէնի համաձայն է:*

[47] *Մնացորդք Բանից, ի լոյս ած Քերովբէ Պատկանեան, Ս. Պետերբուրգ* 1877, *էջ* 39—40: *«Ոսկեղիտակ» լաւագոյն է թերեւս կարդալ «ոսկեդիտակ», որով նախադասութիւնն աւելի իմաստ կ'առնէ:*

[48] Eranische Altertumskunde, I. *էջ* 188.

[49] Ելք *բառի գործածութիւնը տես Դատաւորք, Ե,* 31: — Մուտք *բառինը՝ Ծննդոց՝ ԺԵ,* 12, 17. *ԻԸ,* 11. *Ա. Մակաբայեցւոց՝ ԺԲ,* 27: ***Առանձին ուշադրութեան*** *արժանի է* մայրամուտ *բառը, որուն մէջ տարբեր իմաստ մը ըլլալու է:*

ղովրդական հանելուկ մը [50], որ թէեւ քիչ մը մութ է, բայց յայտնի կերպով արեւու եւ լուսնի ընթացքին հետ կը կապէ սար մը.

«Սար ու լար,
Խրգեան ու լար (?).
Երկու կաքաւ (արեւ եւ լուսին)՝
Գնալ ու գալի»:

Սրուանձտեանց [51] կը գրէ. «Վարագայ սարէն կ'երեւայ արշալոյսէն առաջ յարեւելս արեւուն ծագումն. ահագին լերան մը տակէն կ'ելլեն նախ 12 «ղավաղներ», սեւ սեւ արաբներ. եւ այդ լերան վրայ լուսեղէն ճպոթներով ճառագայթի պէս կը զարնեն. լեռը կը ցածնայ ամեն սարերը իրենց գլուխը կը խոնարհեն ... յանկարծ արեւու ոսկի գլուխն ու հրեղէն բրջամն կ'երեւայ»: Բաբելացիներն [52] ալ ունին արեւու լեռը, որ ցորեկուան ընթացքին արեւու գահին պատուանդանն է, իսկ գիշերուան ժամանակ լուսնի տիրապետութեան տակ կ'իյնայ: Աւստրոնեզեան [53] ցեղերու մէջ կարծիք կայ, թէ արեւն արշալոյսին ճեղքի մը մէջէն կ'ելլէ եւ կը լուսաւորէ երկիրը:

Բ. Սրուանձտեանցի յիշուած տեղիքը նաեւ ուրիշ հայեացքի մը հետ կապ ունի. արեւը լերան մը տակէն կ'ելլէ: Եզնիկ ալ ունի այս տեսագիծը. անիկայ ռամկին հետ կը հաւատայ, որ արեւը «ուրեք ծածկի ցցայգ» — տեղ մը կը ծածկուի գիշերուան ընթացքին: «Այլ ընա՛ւ իսկ» կը հերքեն աւելի խելամուտները, «ո՛չ ուրեք մտանէ արեգակն. եւ զի ո՛չ մտանէ՝ անտի յայտ է, զի ցայգ ի նորա լուսոյն ի լուսնի ամանն լոյս ծագէ. քանզի ինքն երթեալ հեռացեալ յայլ կողմանս երկնիցն գտանի»: Սակայն Եզնիկ ասով չի գոհանար. վասն զի իրեն համար՝ երկինքը վրանի ձեւով՝ տափարակ երկրին վրայ հաստատուած է [54]: Ուստի եթէ գիշեր ատեն երկնքի վրայ ըլլար արեգակը՝ պիտի տեսնուէր. «Եւ թէ ասիցես՝ թէ նա յերկինս իցէ ցայգ, խաւարս որ լինի՝ ուստի՞ իցէ...: Ո՞չ ապաքէն յայտ է՝ թէ ուրեք ծածկի ցայգ. որպէս եւ ի մտիցն է տեսանել. զի իբրեւ ի վերուստ ի խոնարհ իջանէ, եւ դարձեալ յելանելն՝ իբրեւ ի ներքուստ ի վեր ելեալ համբառնայ (էջ 145—146):

Արեւն «ի վերուստ ի խոնարհ» իջած ժամանակ եւ «ի ներքուստ ի վեր» ելլելու ատեն, եթէ լեռնային երկրի մէջ է՝ լերան մէջ մտած կամ լերան մէջէն դուրս եկած կը համարուի. իսկ եթէ ծովային է երկիրը՝ լեռներուն տեղը կը բռնեն ծովերը: Այս երկու տեսագիծներն ալ կը յիշատակէ Եզնիկ, որովհետեւ Հայաստան լեռնային եւ ծովային երկիր է միանգամայն: Ժողովուրդը կը հաւատայ՝ թէ արեւը երկրի տակէն կամ ծովու մէջէն արեւմուտքէն արեւելք կ'երթայ գիշերը: Բայց Եզնիկ համոզուած է, որ արեւը հիւսիսային լեռներու ետեւէն անցնելով՝ արեւելքէն դարձեալ երեւան կու գայ: Բնականաբար կը պնդէ, որ «դառնայ յարեւելս՝ ընդ լերանց ստորոտովք, որպէս ասեն իմաստունք, եւ ո՛չ ընդ ծով, ... եւ ո՛չ ի ներքոյ երկրի. զի ի ներքոյ երկրի ոչինչ է, որպէս ասէ Յոբ [55]՝ թէ Զգեաց զերկիրս ի վերայ ոչնչի» (218): Նոյնպէս ցոյց տալու համար թէ ո՛չ երկրի եւ ո՛չ ծովու մէջէն կրնայ երթալ արեւը՝ կը յարէ. «Եւ ընչի իմիք յոչնչի չէ հնար գնալ, եւ ո՛չ ցամաքական բնութեան ընդ խոնաւութիւն ջուրց»: — «Այլ», կը պատասխանէ ժողովուրդն այս մեկնութենէն տժգոհ, «մեք իսկ աչօք տեսանեմք, զի ի ծովէ ելանէ»: — «Եւ զայն ո՛չ գիտեն», կը շարունակէ մեր Ջատագովը, «թէ վասն զի ցամաք ուրեք ի ծովէ անտի ո՛չ երեւի, յայն սակս թուի՝ թէ ի ծովէ անտի ելանիցէ: Որպէս յորժամ թէ յարեւմուտս ոք մօտ իցէ, եւ լեառն ինչ յարեւելից կողմանէ կայցէ, թուի նմա՝ թէ ի լեռնէ անտի ելանիցէ արեգակն: ...Նոյնպէս եւ նոցա՝ որ մօտ առ ծովուն կայցեն,

---

[50] Ազգագր. Հանդ., IX, էջ 105:

[51] Գրոց ու Բրոց, էջ 109:

[52] Journal of the Society of Oriental Researche, New York City, 1928, Volum XII, Nr. 1, էջ 3.

[53] P. Wilh. Schmidt, Grundlinien etc., էջ 50.

[54] Եղիշէի քով կատարեալ կը գտնենք տիեզերքի այդ պատկերը. «Երկու երկինք են զոր Մովսէս պատմէ. զառաջինն՝ յորում ասէ. Ի սկզբանէ արար Աստուած զերկինս եւ զերկիր. եւ այն վերին երկինքն է զոր եթեր անմատոյց կոչեմք, որոյ որպիսութիւնն անգիտելի է մեզ: Եւ երկրորդ երկինքն է հաստատութիւնս որ երեւի մեզ, յորում աստեղք են եւ սորա եւս անուն երկինք է. ըստ որում եւ Մովսէս ասէ, թէ կոչեաց Աստուած զհաստատութիւնն երկին: Եւ ի մէջ այս երկուց երկնից է ջուրն, զոր բաժանեաց Աստուած՝ զջուր որ ծածկեալ էր զերկիր, զկէսն թողլով յերկիր՝ զոր կոչեաց ծով, եւ զկէսն բարձրացոյց ի վեր քան զամենայն տարերս: Եւ արար զհաստատութիւնն իբրեւ զձեղուն տան ի վերայ երկրի... եւ զայս հաստատութիւնս Դաւիթ իբրեւ զվրան ասէ, իբր թէ զմրէթաձեւ». Հարցմունք եւ պատասխանիք ի գիրս ծննդոց. Patrol. orient., T. XX, f. 1, էջ 26—27:

[55] ԻԶ, 7:

թուի՝ թէ ի ծովէ ելանիցէ. որ ո՛չ ի ծովէ անտի ելանէ, այլ ի ծագաց երկնից»: Վերջապէս ռամիկը չի տարհամոզուիր, պատճառաբանելով, որ առաւօտեան ցօղը ծովէն ելած արեւէն յառաջ կու գայ. «Այլ եւ ցօղ սաստիկ, ասեն, արկանէ յաշխարհին. ուստի յայտ է՝ թէ ի ծովէն ելանէ» (218—219): Անանիա Շիրակացի[56] սա խօսքը կը դնէ արեւու բերանը. «Կատարեմ զգիշերային ընթացս իմ ի ստորեւ երկրիս յարեւմտից յարեւելս»:

Արդէն ուրիշ առթիւ[57] ցոյց տուինք, թէ մեր հայրերուն այս հին հայեացքները ո՛չ միայն հայ ժողովուրդին մէջ մինչեւ հիմայ դեռ կ'ապրին, այլ նաեւ կը գտնուին օտար ազգերու մէջ: Շիրակցիները[58] կը համարին, որ արեւը մար մտնելէն յետոյ՝ ծովու մէջէն արեւելք կ'անցնի: Սասունցիները[59] աւելի կը ճոխացնեն այս պատկերը. արեւը վերջալոյսին ծով մտնելէն յետոյ կը լողայ եւ առաւօտը ծագելու ժամանակ՝ երբ իր երեսը կը լուայ, «Ջուրի ցօղերով կը սրսկուին սարերը եւ դաշտերը. հաւքերը ամէնքը վեր կը թռնեն այս ջրի սրսկումէն»: Արեւը երկրի կամ ծովու մէջ մտնելով՝ սանդարամետ իջած կը համարուի: Այս տեսակէտը սակայն ո՛չ Եզնիկի քով եւ ո՛չ ալ արդի ժողովրդական հաւատքին մէջ շեշտուած է: Օտար դիցաբանութիւններու մէջ արեւը սանդարամետի մէջէն կ'անցնի գիշերը շատ անգամ նաւով մը: Հոմերոսի[60] կարծիքով՝ Աթենաս գիշերը երկարատեւ ընելու եւ արեւուն ծագիլն ուշացնելու համար, Արշալոյսն ալիքներու վրայ կը կեցնէ, եւ անոր սրավար նժոյգներուն թոյլ չի' տար որ լծուին՝ մարդկան լոյս բերելու համար: Բաբելական դիցաբանութեան համաձայն՝ գիշերուան ընթացքին արեւը ստորերկրեայ սանդարամետի մէջէն կ'ընթանայ, ուր մտած կը համարուի սանդարամետի արեւմտեան դըռնէն եւ ուսկից կ'ելլէ արեւելեան դռնէն: Երբ այս տեղէն ալ վեր կը բարձրանայ օրուան աստղը, երկիրն արշալոյս կ'ունենայ. որովհետեւ այդ դուռը երկրիս մէկ ծայրը կը գտնուի (արեւելք), ճիշդ արեւմտեան դրան դիմաց, որ նոյնպէս երկրիս միւս ծագին վրայ է: Եգիպտական Մեռելագրքին մէջ[61] կը կարդանք. «Ո՛վ Տում-Ռա (արեւու աստուած), որ ջուրէն փառաւորութեամբ վեր կը բարձրանաս» եւն: Եգիպտական ուրիշ տեսագծի մը համաձայն՝ արեւն իրիկուն Ակերու աստուծոյն բերնէն ներս կը մտնէ. Ակերու երկու իրարու կպած առիւծներու մարմինէ կը բաղկանայ. առիւծներուն մէկ գլուխը արեւմուտք կը գտնուի, իսկ միւսն արեւելք: Իրիկունն արեւմտեան գլխուն բերնէն կը մտնէ արեւը եւ առտու արեւելեան բերնէն լոյս աշխարհ կ'ելլէ: Տաբարի[62] կը գրէ. «Աստուած արեւուն եւ լուսնին համար ստեղծեց՝ արեւելք եւ արեւմուտք՝ հարիւր ութսունական աղբիւրներ, որոնք սեւ տիղմով լեցուած վայրէ մը կը բխեն: Այդ աղբիւրներէն հարիւրութսունն արեւելք են, նոյնչափն ալ արեւմուտք: Աղբիւրներու սկախառն ջուրն այնպէս կ'եռայ, որ կարծես թէ կաթսայի մը մէջ ըլլար: Իւրաքանչիւր օր արեւը կարգաւ կ'ելլէ կը բարձրանայ ակի մը մէջէն՝ արեւելքի կողմը: Եւ տարուան մէջ երկու անգամ կը ծագի նոյն ակի մէջէն: Իսկ մար մտնելու ժամանակ նոյն բանը կ'ընէ արեւմտեան աղբիւրներուն մէջ մտնելով» եւ այլն: Յայտնի է, որ հոս եռացող սկախառն աղբիւրները սանդարամետի դռները կամ ծակերն են, որոնց մէջէն կը մտնէ ու կ'ելլէ արեգակը:

գ. Երկու տեղ մեր հեղինակն առհասարակ աստղերն ու արեւն իբր աչք կը ներկայացնէ: «(Ստոյիկեանքն) Աստուած զմիտս սահմանեցին, իբրեւ թէ շունչ ամենայնի իցէ, տարերն երկնից եւ երկրի. մարմին նմա զամենայն ինչ որ է՝ եդին, եւ աչս՝ զլուսաւորսն» (236): «(Ստոյիկեանք) զմիտս աստուած համարեցան[63]. իբրեւ զշունչ երկ-

56 Մնացորդք Բանից, էջ 61:
57 Հանդ. Ամս., 1929, էջ 645, 649. Հմմտ. նաեւ Ազգագր. Հանդ. X, էջ 198, XVII, էջ 94:
58 Էմինեան ազգագր. ժող., Ա, էջ 198:
59 Գրոց ու Բրոց, էջ 107 եւ 109:
60 Ոդիսական, ԻԳ:

61 Dr. Theodor Hoepfner, Der Tierkult der alten Ägypter (Denkschr. d. kais. Akad. d. Wiss. in Wien. Phil.-hist. Klasse, 57. Bd., 2. Abhandl.). Wien 1914, էջ 41. Archiv Orientálni, Praha 1931 (Vol. III), Nr. 1, էջ 140.

62 Tabari, Chronique, Traduite par M. H. Zottenberg, Paris 1867, tome I, էջ 27, 29.

63 Ստոյիկեանները կը վարդապետէին՝ որ նախահուրն Աստուած՝ փոփոխուելով՝ տիեզերքի կը յեղաշրջուի: Տիեզերքի վրայ տեսնուած առանձնական գոյակներն այդ նախէակին յանսահմանս եղանակաւորուած արտայայտութիւններն են: Աստուածութիւնը միանգամայն կը մտածուի իբր Միտք (λόγος, νοῦς) կամ Նախախնամութիւն (πρόνοια) կամ Ճակատագիր (εἱμαρμένη), վերջապէս բանաւոր էակ, այնպէս որ այդ աստուածային Մտքին արտայայտութիւններն կը նկատուին ո՛չ միայն տիեզերքի օրէնք-

նից եւ երկրի եւ ամենայնի որ ի նոսա, Եւ աչա զլուսաւորսն» (261)։ Սարյիկեան այս հայեացքը մենք ո՛չ միայն օտարներու քով գտանք, այլ եւ նշմարեցինք գայն մեր ազգային հաւատալիքներուն մէջ[64]։

Մեր արեգակն բառը պէտք է «արեւու աչք» հասկնանք։ Բառն իր «ակն» վանկով երկու բացատրութիւններու կարելիութիւն կու տայ․ «ակն» մէյ մը կրնայ իբր պատուական քար հասկցուիլ, որով կը ստանք «արեւ–գոհար» իմաստը, ինչ որ ընդհանուր դիցաբանութեան մէջ հազուադէպ երեւոյթ մը չէ։ Դարձեալ՝ «արեգակն» կրնանք ստուգաբանել իբր «արեւ–աչք» եւ կ'ունենանք չատ սովորական դիցաբանական ըմբռնում մը։ Արդ, այս երկու հնարաւորութիւններէն ո՞րը ճիշդ է։ Հոս՝ հայ լեզուն վճիռը կու տայ։ «Արեգակն» բառի յոգնակին «արեգակունք» կ'ըլլայ։ Յայտնի է, որ այդ «․․․ակունք» գործ չունի «ականք»ի հետ։ Վերջինս ոսկեդարու մատենագրութեան մէջ միայն ու միայն «գոհարներ» կը նշանակէ։ Ուստի՝ եթէ «արեգակն» հաւասար ըլլար «արեւ–գոհար» իմաստին, մեր ոսկեդարու հեղինակները մեզի պիտի աւանդէին «արեգականք» ձեւը, որ գոյութիւն չունի[65]։ Եզնիկ մէկ անգամ կը գործածէ այդ բառն․ «Ընդէ՞ր ո՛չ բազում աշխարհք իցեն եւ ոչ բազում երկինք եւ ոչ բազում արեգակունք եւ ոչ բազում երկիրք» (260)։

Այժմ հարց կը ծագի՝ թէ «արեւու աչք» ըսելով ի՞նչ պիտի հասկնանք։ Հոս այս մասին չենք ուզեր ծանրանալ․ միայն անցողակի կու տանք հետեւեալ բացատրութիւնը, զոր ապագային կը յուսանք թէ աւելի մանրամասն ներկայացնելու առիթը կ'ունենանք։

Արդ ակնարկուած «աչք»ը համաշխարհային դիցաբանութեան վկայութեամբ՝ կը վերաբերի լուսոյ գերագոյն աստուածին, որ հոս «արեգ, արեւ» բառին տակ ծածկուած է։ Այս վերջին երկու բառերուն հետ նոյն է «արփի», որ թէեւ դասական մատենագրութեամբ մեզի չէ հասած, բայց իմաստը՝ զոր կը յայտնէ, դիցաբանական ժամանակաշրջանին կը հասցնէ զմեզ։ Բազմաթիւ տեղիքներ՝ համոզած են զիս, որ այդ «արփի» բառը կը նշանակէ «յաւիտենական, անստեղծ, անստուեր լոյս», գաղափար մը, որ սովորական է հնդիկեւրոպական՝ ու մանաւորապէս արեւելեան արիական դիցաբանութիւններուն[66]։ Արդ, յաւիտենական անստուեր լոյսը կը նոյնանայ գերագոյն աստուածին հետ․ սոր աչքն է արեգակը։ Ուստի եւ «արեգակն» ուրիշ բան ըսել չէ, եթէ ոչ «արփի–ակն», այսինքն լոյսի գերագոյն աստուածութեան աչքը։ Լեզուաբանութիւնն ալ կը հիմնաւորէ մեր այս մեկնութիւնը, որովհետեւ «արեւ, արեգ» նոյն է «արփի» բառին հետ[67]։ «Արեգակն» եւ «արփի» պերճախօս վկաներն են հայ հին լուսապաշտութեան, որմէ բազմաթիւ մնացորդներ հասած են մեզի։

դ․ Արեգակն իբր գերագոյն աստուածութեան աչք՝ կը շրջի հաստատութեան վրայ ու կ'անցնի սանդարամետի մէջէն։ Այսպէս ամբողջ տիեզերքի վրայ յածելով անցած միջոցին՝ բնական է թէ արփիի աչքին տակ կ'իյնայ ամէն ինչ։ Ասոր հետեւանքով կը նկատուի արդարութիւն եւ իրաւունք վճռող, այսինքն՝ երկնային դատաւոր։ Հայեացքիս մասին Եզնիկ գեղեցիկ օրինակ մը կ'ընձեռէ պարսիկ դիցաբանութենէն․ «Արհմն, ասեն, զՈրմիզդ ի ճաչ կոչեաց․ եւ եկեալ Որմզդի՝ չկամեցաւ զճաչն ուտել, եթէ ոչ նախ որդիքն նոցա կռուիցեն։ Եւ ի խեթկել որդւոյն Արհմենի զորդին Որմզդի, ի խնդիր եղեն դատաւորի եւ ոչ գտին․ ապա առեալ արարին զարեգակն, զի լիցի նոցա դատաւոր» (162)։

ե․ Ընդհանուր դիցաբանութեան մէջ արեւն ու լուսինը ո՛չ միայն աչք կը նկա–

ները, այլ եւ յատկապէս մարդու միտքն աստուածութեան մէկ բխումը կը համարուի․ Wetzer u. Weltes, Kirchenlexikon, Freiburg i. Breisgau, 1899, XI. Bd., էջ 831։

[64] «Փիլիսոփոսք իբրեւ զաչս երկնից ասեն զանչարժ աստեղսն հաստատեալ յերկինս», Եղիշէ, անդ, էջ 32։

[65] Հոս պատշաճ կը համարինք Մեծ․ Հ․ Գ․ Սարգսեանի ուշադրութիւնը թիւրիմացութեան մը վրայ հրաւիրել։ Բ ա զ մ ա վ է պ ի մէջ, 1929, էջ 382, գրած է․ «Ակն գրաբարի մէջ, պատուական քար նշանակելու համար՝ ինչպէս Մեծ․ Հ․ Յակ․ Վրդ․ Տաշեան ալ կ'ըսէ, միշտ ականք կ'ըլլայ յոգնականի մէջ»․ Նոյն տեղ կը կրկնէ այս խօսքը։ Կ'ակնարկուի Հանդ․ Ամս․, 1929, էջ 635, ուր եւ այլուր իբր թէ Հ․ Յ․ Տաշեան այդպիսի արտայայտութիւն մը ըրած ըլլայ։ Մեծ․ Հ․ Գ․ Սարգսեանն ուշադիր կ'ուզենք ընել, որ յօդուածն ստորագրողին դիտողութիւնն է այդ, որ հոս աւելի մանրամասն նկատողութեան կ'առնուի։

[66] A. Christensen, Études sur le Zaroastrisme de la Perse antique. Kobenhavn 1928, էջ 55. Fr. Windischmann, Zoroastrische Studien. Berlin 1863, էջ 63.

[67] Հմմտ․ Աճառեան, Արմատական բառարան, «Արփի»։

տուլին, այլ եւ ուրիշ առարկաներու հետ նոյն կը համարուին: Այս նոյնացումը յառաջ կու գայ՝ խնդրական առարկային ու արեւուն եւ այլն մէջ տեսնուած նմանութենէ մը, որ շատ անգամ բնամարդու պարզ աչքերով նշմարուած է: Այսպէս՝ արեւը ո՛չ միայն չակ մը կը նկատուի, այլ նաեւ — ինչպէս տեսանք — աստուածութեան մը աչքը. դարձեալ՝ վահան, գնդակ, անիւ են[68]: Այս վերջին հայեացքը նաեւ Եզնիկի ծանօթ է. «Ճառագայթք արեգական զանուէն կախեալ կան ... արեգակն մի է եւ բազում, զի մի անիւ է եւ բազում ճառագայթք» (234): Վեդական հանելուկ մը[69] հետեւեալը կ'ըսէ արեւու մասին. «Եօթը (ձիեր) կը քաշեն միանիւ կառք մը. երեք միջնանիւներ ունի այդ անանց եւ անդադրուն անիւը, որով կը կայանան ամբողջ էակները»: Հանելուկիս միանիւ կառքն արեւն է. զայն կը քաշեն ճառագայթները, որոնք եօթը կը համարուին: Երեք միջնանիւները կը համապատասխանեն առաւօտուան, միջօրէին եւ իրիկուան:

գ. Ս. Նեղոսի խրատներու թարգմանութեան մէջ՝ Եզնիկ ունի սա հատուածը[70]. «Քաղցր է մեղր, բայց ախտալից մարմնոյ վնաս առնէ. օգտակար է խրատ եւ յանդիմանութիւն, բայց որ զդէմս յարեւմուտս է հաստատեալ՝ նմա անօգուտ է» (359): Արեւմուտքը արեւու մահուան վայրն է, ուր կը գտնուի սանդարամետի դուռը: Լոյսն արեւելքէն կը ծագի, խաւարի խորհրդանիշն արեւմուտքն է. ուստի մահ եւ խաւար արեւմուտքի հետ կապուած են, իսկ կեանք ու լոյս՝ արեւելքի հետ: Մահուան ու խաւարի չար ոգին կամ աստուածութիւնը — սատանան, արեւմուտք կը բնակի. իսկ կեանքի եւ լոյսի բարի ոգին՝ արեւելք: Արդ երբ մէկը խրատ մը լսելէն յետոյ «զդէմս յարեւմուտս» կը հաստատէ՝ սիրտն ու հոգին սատանային կ'ուղղէ ու անոր տրամադրութեան կ'ենթարկէ, բնականաբար «նմա անօգուտ է» խրատը: Շատ ընտիր օրինակ մըն է՝ Ն. Շնորհալւոյ դրած պայմանն՝ Արեւորդիներու դարձին համար[71]. «Եւ յորժամ գայս (գալ ի ճշմարիտ աստուածգիտութիւն քրիստոնէութեանս) յանձն առնուն (Արեւորդիքն) եւ ասեն եթէ կամաւ եւ յօժարութեամբ սրտից ի բաց կամք ի սատանայական խաբէութեանց հարցն մերոց... յայնժամ դարձեալ երիցս անգամ հարցէք ցնոսա, որպէս ընդ երեխայսն ի ժամ մկրտութեանն, եթէ հրաժարէ՞ք ի սատանայէ եւ յամենայն խորհրդոց եւ ի բանից եւ ի գործոց նորա: Եւ իբրեւ յանձն առնուն եւ ասեն թէ հրաժարեմք, ապա յարեւմուտս դարձուցէք զդէմս երեսաց նոցա եւ ասացէք, թէ թքէ՛ք յերեսն սատանայի երիցս անգամ, եւ անարգեցէք զնա որպէս զպիղծ եւ զգուտ եւ զանիրաւ»: Վերի խօսքը կ'ակնարկէ մկրտութեան ժամանակ տեղի ունեցած ծիսակատարութեան, զոր Մաշտոցը[72] հետեւեալ կերպով կը բանաձեւէ. «Ապա հրամայէ քահանայն երեխային կամ կնքահօրն դառնալ դէպ յարեւմուտս, եւ հարցանէ զերեխայն յանուանէ՝ ասելով. (Այս անուն) հրաժարի՞ս ի սատանայէ: — Հրաժարիմ: ...Եւ ապա քահանայն հրամայէ երեխային կամ կնքահօրն դառնալ դէպ յարեւելս, եւ հարցանէ զերեխայն յանուանէ՝ ասելով ... Հաւատա՞ս ի յԱստուած» են: Մխիթար Այրիվանեցի[73] մեր Արեւորդիներուն մասին կը գրէ. «Ընդ որ (կողմն) երթայ արեգակն, ընդ այնմ երկրպագեն եւ պատուեն զծառն բարտի եւ զշուշան-ծաղիկ եւ զբամբակին եւ զայլսն, որ զդէմս իւրեանց շրջեցուցանեն ընդդէմ արեգական»: Շիրակացի[74] մայրերը կը խրատեն իրենց որդիները. «Երեսդ դէպ աղօթրան արած, կամ արեգակի դէմ մի՛ ցեխի (միզեր), որ չպատժուես»: Հոմերոսի գուշակներն արեւելքէն յածող թռչունին երեւնալը բարեգուշակ կը համարէին, իսկ արեւմուտք թեւածողը՝ չարագուշակ:

(Շարունակելի:) Հ. ԱԹԱՆԱՍ ԳԱՐԱՄԱՆԼԵԱՆ



[68] P. Ehrenreich, Allgemeine Mythologie und ihre ethnologischen Grundlagen, Leipzig 1910, էջ 162: Անանիա Շիրակացի, անդ, էջ 53: Մանանայ, էջ 126: Հանդ. Ամս. 1929, էջ 436:

[69] Haug, Vedische Rätselfragen und Rätselsprüche, Sitzungsber. d. k. bayer. Akadem. d. Wiss. zu München. Phil.-hist. Klasse, Bd. II (1875), Heft. IV, էջ 463.

[70] Մեզի համար կարեւորութիւն չունի թէ արդեօք իրապէս Եզնի՛կ է խրատներուն թարգմանը եւ թէ անոնք Ս. Նեղոսի՛ կը վերաբերին: Վարք Հարանցի մէջ ալ կայ մի եւ նոյն հատուածը, Վենետիկ 1855, Բ. հատոր, էջ 720:

[71] Նամականի, Վենետիկ 1838, էջ 242:

[72] Մաշտոց Հայաստանեայց ուղղափառ Եկեղեցւոյ. Վիեննա 1905, էջ 7:

[73] Ալիշան, Հին Հաւատք կամ Հեթանոսական կրօնք Հայոց, Վենետիկ 1895, էջ 92—93:

[74] Նմին. տպագր. ժող., Ա, էջ 151:

ցածն այնչափ քիչ, որ կարելի չէ պնդել թէ ի՛նչ էր բուն իրողութիւնը, կամ թէ կա՞յ արդեօք որեւէ կախում կամ փոխառութիւն եւն: Ուստի նոր քննութեանց ասպարէզ կը մնայ:

(Շարունակելի:) Հ. Ե. Տ.



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԸ ԵԶՆԻԿԻ ՔՈՎ

(Շարունակութիւն:)

4. Լուսին[75]. ա. «(Լուսին) ամսոյ ամսոյ հիւծանի, զրեթէ եւ մեռանի, եւ ապա սկիզբն առնու կենդանանալոյ, զի քեզ զյարութեան օրինակն նկարիցէ» (19): Գիշերուան լուսատուն՝ իր փուլերուն զգալի փոփոխութեամբ եւ կանոնաւոր կերպով կրկնուող բայց կարճատեւ անյայտացումով եւ վերստին երեւումով, բնամարդուն աչքին անսէ ամէն կրկնուող մահուան ու ծնունդի պատկերը կը ներկայացնէր: Լուսինն իր այս տեսադծո՛վ մանաւանդ՝ մահուան աստուածութիւն կը համարուի ամբողջ երկրի դիցաբանութիւններուն մէջ: Զարմանալի չէ, որ մեռելներու աշխարհին — սանդարամետի տէ՛րը կ՚ընդունի զայն ժողովրդական հաւատքը: Իբրեւ մահուան աստուածութիւն հոգիներու վրայ կը տիրէ եւ կ՚առաջնորդէ անոնց դէպ ի սանդարամետ, ուր կը սփռէ իր լոյսը եւ տեղւոյն արեւը կ՚ըլլայ: Դիցաբանական այս հայեացքներուն անդրադառնալէ յետոյ՝ կարծեմ ո՛չ ոք պիտի կարծէ, թէ մեր Կողբացի հեղինակը պարզ բանաստեղծական դարձուածք մը կ՚ընէ յառաջբերութեանս մէջ: Ագաթանգեղոս[76] եւ ուրիշ ազգային հեղինակներ ալ կը յիշեն լուսնոյ այս տեսադիծը. «(Լուսին) յարեմտից մինչեւ յարեւելս երթայ ի մանկութիւն: Դարձեալ յարեւմուտս... ծերացեալ հասանէ, պատի, թաղի. գուշակ թաղելոց, յարութիւն մեռելոց»: Այս հաւատքին հետ կապ ունի՝ ինչ որ Եզնիկ Պիւթագորեաններու[77] մասին կը հաղորդէ. «Եդ կրօնս Պիւթագորաս... ի լուսնոյ եւ ի վեր զամենայն ինչ որ է՝ անմահ համարել, եւ որ ինչ նորա ի ներքոյ՝ մահկանացու» (235): Ուրիշ տեղ մը Պիւթագորասի այս ըմբռնումը հերքելու համար կ՚ըսէ. «Կարի անարժան գործ էր, եւ ի լուսնոյ ի վեր զամենայն ինչ անմահ համարել: Ցայտ առնէ, թէ զայն ամենայն աստուածս կարծէր. եւ անտի եւ ի խոնարհ մահկանացու դնելով, ցուցանէր՝ թէ հուրդ եւ օդ եւ երկիր՝ կենդանիք ինչ իցեն եւ մեռանիցին. որոց ոչ կենդանութիւնն զգացեալ, եւ ոչ զմահու պղդումն առնուն, որ չնչաւորացն է եւ ոչ անշնչոց» (265): Փռիւգացիներու քով[78] շատ տարածուած էր բարբարոսներու Մէն աստուածութեան պաշտօնը: Փոքրասիական այլ եւ այլ ցեղեր՝ այդ անուան տակ լուսնային դիք մը կը պաշտէին, որ միաժամանակ երկնի եւ սանդարամետի (հոգիներու բնակարաններուն) իշխանը կը կարծուէր, ինչպէս որ լուսինն ալ՝ իբր գիշերային լուսատու՝ մեռելներու խաւարամած իշխանութեան հետ յարաբերութեան մէջ կը դրուի: Աւստրոնեզեաններն[79] մահն ու մեռելութիւնը լուսնին կու տան, իսկ կեանքը՝ արեւուն:

բ. «Լուսին — խոնաւական բնութիւն — առանց խառնուածոյ ջերմութեան արեգականն, վնասակար եւ ապականիչ է» (13): Տեղիքս կապ ունի շատ տարածուած հաւատալիքի մը հետ. լուսնի փճացնող զօրութիւն մը կը վերագրուի, որ յատկապէս բոյսերու եւ կենդանիներու վրայ աւերիչ ներգործութեամբ մը կ՚ազդէ: Լուսնի իշխանութեան տակ կ՚երթան բոյսերն ու անասունները: Ընդհանուր դիցաբանութեան մէջ հա-

[75] Լուսինն ալ արեւու պէս առարկայ կրնայ նկատուիլ եւ իբրեւ պղպիսի՝ կ՚ըլլայ գնդակ, մանգաղ, թուր, աղեղ, քար(վէմ), զմելին, ոսկոր, գանկ, սկահ, սան, մուրճ, կօշիկ, ջրաղաց, անիւ, սմբակ, վահան, սանտր, օրօրոց, նաւ եւն, Ehrenreich, անդ, էջ 115:

[76] Ագաթանգեղոս, Վենետիկ 1835, էջ 80. հմմտ. Հանդ. Ամս. 1929, էջ 644:

[77] Լուսնէն մինչեւ վերը՝ 7 աստղներ կան մին միւսէն բարձր դիրքով. անոնց մէջ ամէնէն ցած տեղը կը գրաւէ լուսինը: Ինչ որ լուսնէն վեր է՝ մահուան ենթակայ չէ, իսկ ինչ որ լուսնէն վար է — ենթալուսնեայ — չի կրնար մահուընէ զերծ ըլլալ: «Եւ ո՛չ աստղ ցածաղոյն գոյ քան զլուսինն՝ թէ ի ներքոյ նորա հանդիպեալ գնա խաւարեցուցէ» (249) խօսքը որչափ ալ հարազատ է իբր հաւատալիք, սակայն եւ այնպէս Աճառեանի բնագրին մէջ կը պակսի, ուստի ներմուծուած է. Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին, Վիեննա 1904 (Ազգ. Մատն. ԽԸ), էջ 56: Եղիշէ կ՚ըսէ. «(Փիլիսոփայք) զլուսնի գնացս ի ներքոյ ամենայն աստեղաց դնեն», էջ 32: Արիստոտէլ եւս կ՚ընդունէր «ենթալուսնային» դրութիւնը. Stöckl, Grundriß der Geschichte der Philosophie, 1924, 85:

[78] F. Cumont, էջ 57:

[79] P. W. Schmidt, Grundlinien, էջ 106:

զուադէպ երեւոյթ չէ այն հաւատքը թէ լուսինը միանգամայն աստուածութիւն է բուսականութեան, անասուններու, երկրի, հովու, օդի, մրրկային երեւոյթներու եւ այլն[80]: Լուսինը բուսականութեան աստուածութիւն կը համարուի՝ ո՛չ թէ այն իմաստով՝ որ իբր սերմի ոգի մը հունտին մէջ կը բնակի, այլ կը նկատուի բուսական կեանքի վրայ արտաքուստ ազդող զօրութիւն մը, որ նաեւ կենդանիներու եւ մարդկան վրայ որոշիչ դեր մը կը կատարէ: Այս տեսակէտով Յ. Մանդակունի[81] թանկագին բեկորներ կը հաղորդէ հայ հին հաւատալիքներէ: «Վասն հմայից դիւթականաց» իր քարոզին մէջ կը կարդանք. «Եղծումն... ոչ եթէ ի լուսնոյ (լինի), զի ո՛չ եթէ ի լուսնի անձրեւ է. եւ ոչ եթէ ի տօթութիւն (°), եւ ոչ օդ՝ եթէ վնասէր խոտոյ եւ սերմանց եւ ամենայն գործոյ՝ զոր խորհես գործել ի յաւուրս նորա. բայց միայն լուսատու է արարածոց: Եւ քեզ ի լուսնոյն վնաս երբեք ոչ լինի, բայց միայն ի տօթոյ արեգական եւ ի խոնաւութենէ լուսնի»:

Վեցօրեաններու մէջէն կ'երեւայ թէ Եզնիկ նիւթեր քաղած է. հոս յառաջ կը բերենք նիւթիս հայող իր մէկ հատուածը, որ ակնյայտնի կերպով կապ ունի Բարսեղի երկին հետ, զոր նաեւ Անանիա Շիրակացի օգտագործած է. «Ասեն՝ եթէ ի յաճախելն (լուսնի)՝ յամենայն իմիք աճէ հիւթն որ ի նմայն է, եւ ի լնուլն՝ լնու, եւ ի պակասելն՝ պակասէ: Որպէս փորձ իրացն իսկ յուղիղս ամենայն մսեղեաց ցուցանէ, եւ ի ծառս եւ ի տունկս խոնաւութիւնն» (246—247). յաջորդող խօսքերուն մէջ ալ երեք հեղինակներն իրարու հետ կապուած են: Անանիա Շիրակացի[82] Եզնիկի պէս ինքնուրոյն կերպով չ'օգտագործեր վեցօրեայքն, այլ գրեթէ բառացի կ'ընդօրինակէ. «Ի փոփոխմունսն որ լինին ի լուսնին՝ անասունք գիրութիւն առնուն, եւ տունկք օգնականութիւն գտանեն աճման սննդեան իւրեանց: Զի ի մաշելն լուծութիւն եւ ապականութիւն գտանի ի նոսա. եւ յաճելն լիութիւն եւ պնդութիւն առաւելու ի նոսա: Քանզի լուսին ի ջերմութենէ եւ ի խոնաւութենէն ունի խառնուած: Եւ այս լիցի քեզ նշան. զի որք ի լուսնակային ննջեն՝ խոնաւութիւն լինի ի գլուխս նոցա: Եւ զմիս ղալար եթէ ի լուսնակլի կախիցեն, հոտի եւ ապականի. եւ ի ջրայինս պակասութիւն եւ լիութիւն գտանի, սապէս եւ ի սիրտս ծառոց»: Անանիա Շիրակացի այս ամբողջ հատուածը քաղած է Բարսղի «Վեցօրեաներէն». հետեւեալն է խնդրական տեղիքը[83]. «Ի փոփոխմունսն որ լինին ի լուսնի, անասունք գիրութիւն առնուն եւ տունկք օգնականութիւն գտանեն աճման սննդեան իւրեանց. քանզի ի մաշելն այլազգի գտանին, եւ ընդ աճելն այլազգ փոփոխին, զի յորժամ սկսանի մաշել՝ լուծութիւն եւ ունայնութիւն գտանի ի նոսա, եւ յորժամ աճելն սկսանի՝ լրութիւն եւ պնդութիւն առաւելու ի նոսա: Քանզի լուսինն ի ջերմութենէ եւ ի խոնաւութենէ ունի խառնուած, եւ մինչեւ ի խորս իրացն հասանէ պիտոյիւքն՝ տալ ի նոսա զպաշտօնն յանզգաստս: Եւ իրագէտք իրացս այսոցիկ, ասեն. Որ ընդ լուսով լուսնին ննջիցեն, առաւել խոնաւութիւն լիցի ի գլուխս նոցա, եւ զմիս ղալար յորժամ ի լոյս լուսնի ոք կախիցէ, վաղվաղակի հոտի եւ ապականի»: Այս յառաջբերութիւններէն յայտնի կ'երեւայ, որ նորածին լուսի՛նը մանաւանդ փոփոխութիւն, աճում ու զարգացում յառաջ կը բերէ, իսկ մահամերձ լուսինն ապականութիւն ու մահ:

Այժմ նկատենք քանի մը ժամանակակից հայ հայեացքներ: Նոր Նախիջեւանի[84] մէջ՝ երբ նորածագ լուսինն առաջին անգամ կը տեսնեն՝ գլխէն քիչ մը մազ կը կտրեն, որպէս զի շուտով աճի մազը: Աւելորդապաշտութեանս իմաստն այն է, որ կտրուած մազը իր աճումը նորածագ լուսնին աճման զուգընթաց կ'ընէ, այս պատճառով անոր ուռճացնող ազդեցութեան կ'ենթարկուի: Ջաւախքի ռամիկը[85] երբ կոծիծ ունենայ, խնձոր մ'առած նոր լուսնին ցոյց կու տայ եւ ապա գետին կը թաղէ խնձորը, որ անոր փտելուն հետ՝ նաեւ կոծիծները վերջանան: Խնձորը բռնողն անոր վրայ անցուցած կը համարի իր հիւանդութիւնը. եւ երբ խնձորը հողին տակ փտելու կը սկսի, լուսինն ալ իր լիութեան կը դիմէ միաժամանակ, շրջան մը՝ որ ապականիչ եւ մահաբեր ըլլալուն՝

---

80 P. Ehrenreich, էջ 41 եւ 125:
81 Ճառք, Վենետիկ 1860, էջ 198:
82 Մնացորդք Բանից, էջ 51—52:

83 Ճառք վասն վեցօրեայ արարչութեանն, Վենետիկ 1830, էջ 132—133:
84 Ազգագր. Հանդ., IX, էջ 46:
85 Անդ, Ա, էջ 361:

մահ կը բերէ խնձորին վրայ փոխադրուած կոծիծին : Զանց կ'ընենք յիշել ուրիշ օրինակներ մեր արդի ժողովրդական հաւատքէն : Փոքրասիական հին ժողովուրդներ՝ Հայերու պէս՝ լուսնի երկնային ազդեցութեան կը վերագրէին բոյսերու աճումը, կենդանիներու բազմանալը, եւ գիւղացիներն անոր կը դիմէին իրր իրենց բակերուն ու չուկաներու պաշտպանին [86] :

գ· Լուսնի ապականիչ ազդեցութեան պէտք է վերագրել նաեւ չատ մը հիւանդութիւններ, որոնք սերտօրէն այդ աստղին հետ յարաբերութեան մէջ կը դրուին : Այդ հիւանդութիւններու մէջ՝ ամէնէն ուշագրաւն է լուսնոտութիւնը, որ — ինչպէս արդէն բառը ցոյց կու տայ — լուսնի ազդեցութեամբ յառաջ եկած հիւանդութիւն մը կը համարուի : Եզնիկ ընդունելի չի՛ նկատեր այս հայեացքը եւ իր կողմանէ նոր մը երեւան կը բերէ · «Եւ լուսնոտքն որք ասին, ո՛չ եթէ լուսնոյ վնասել՝ այնպիսիք կոչին, այլ դաս ինչ է դիւաց, որ ըստ լուսնոյ յայտնին» (208) : Եզնիկ սեմական հաւատալիքներու հետեւելով գրեթէ ամէն հիւանդութիւն չար ոգւոյ մը կը վերագրէ · բայց հոս ուշագրաւն այն է, որ լուսնոտութիւնն ալ դեւերու տալէ յետոյ՝ զանոնք յայտնապէս լուսնէն անբաժան կը ներկայացնէ :

դ· Բնամարդուն համար՝ բնութենական ամէն տարօրինակ երեւոյթ, ո՛րչափ ալ չնչին եւ աննչանակ համարուի այն, ուշադրութիւնը սաստիկ գրաւող եւ նոյն իսկ առինքնող բան մ'ունի : Լուսնի խաւարումն այդ երեւոյթներու մէջ գլխաւոր տեղ մը կը գրաւէ : Եզնիկ մեզի կ'իմացնէ՝ թէ այդ խաւարումը երբեմն կախարդներու արուեստով տեղի ունեցած կը կարծուէր · այսինքն՝ կախարդները ժամանակ մը լուսինը կը բռնեն երկիր կ'իջեցնեն, որով ան այլեւս կ'անբնեւութանայ իր պայծառ լոյսին հետ եւ չի՛ լուսաւորեր երկնքէն, մինչեւ որ կախարդները զայն վերստին արձակեն եւ իրենց բժժանքներով երկինք հանեն : Եզնիկ՝ ցոյց տալու համար՝ թէ չի կրնար ըլլալ այս անհեթեթ բանը՝ կը պատճառաբանէ · «Եւ քանի՛ անթիւ բիւրուց կախարդաց են յերկրի · եթէ իւրաքանչիւր ոք ի նոցանէ իջուցանել կարէր զնա, ո՛չ երբեք տային նմա ելանել յերկինս» (249) : «Եւ չէ հնար լուսնի յերկիր իջանել · որպէս կախարդաց տեսեալ ի ժամանակի հրամանաւ Աստուծոյ զլուսնոյն արիւնագոյն լինելոյ զկերպարանսն՝ դիւի նմանել լուսնի բարբանջեն, թէ զլուսին իջուցանիցեն · որում չեն մարթ լինել, թէ որ քան զբազում աշխարհս մեծ է՝ թէ ի կալ մի փոքրիկ ամփոփիցի եւ կթիցի անստինն [87]» (249—250) :

Ինչպէս կը տեսնուի՝ տեղիքս մութ է, ո՛չ միայն նախադասութեան խրթին դարձուածքին պատճառով, այլ նաեւ ներկայացուցած դիցաբանական պատկերին հազուադէպ ըլլալէն : Նախադասութեան մօտաւոր իմաստն այս ըլլալու է · «Լուսինը չի՛ կրնար երկիր իջնալ, ինչպէս որ կախարդները կ'ըսեն · երբ կը տեսնեն՝ որ Աստուծոյ հրամանով՝ լուսնի խաւարելու ժամանակ՝ իբր թէ դեւի կերպարանք կ'առնէ լուսինը, եւ կը բարբանջեն՝ որ (իրենց հրամանով) լուսինը երկիր կ'իջեցնեն» : Խաւարման պահուն՝ կախարդը դեւի կերպարանք առած լուսնին կը հրամայէ, որ երկիր իջնայ · զի կախարդը դեւին պաշտօնեան է, որ երբ կախարդութիւն մը գործադրել ուզէ՝ սատանային միջնորդութեամբ կը կատարէ : Եւ քանի որ սատանան լուսնի վրայ տիրացած է խաւարումի ընթացքին՝ ինքզինքը կախարդին տրամադրութեան տակ կը ձգէ : Բարսեղի «Վեցօրեաներուն» մէջ [88] ալ կը հանդիպինք նոյն կախարդութեան · «Ծարժելով, ասեն, չարժեն մարդիկ զլուսին եւ յերկիր իջուցանեն : — Ինչ զոր Աստուած հաստատեաց եդ ան-

---

[86] F. Cumont, էջ 57 :

[87] L. Maries չատ բռնազբօսիկ կերպով կը թարգմանէ տեղիքս, ուստի անընդունելի է · «Et il n'est pas possible à la lune de descendre sur la terre: comme les sorciers, ayant vu, à une époque, par le commandement de Dieu, les formes de la lune devenue couleur de sang, émettent cette sornette; qu'ils tordent les pis (les mamelles) [«դիւի նմանել» կ'ուզէ «զստին մանել»? կարդալ] de la lune, si par hasard ils feront descendre la lune. Ce qui ne peut pas arriver, que (elle) qui est plus grande que beaucoup de mondes, se rétrécisse dans une petite aire, et soit traite, elle qui n'a pas de mamelles», անդ, էջ 186—187 : Որչափ ալ խրթին է բնագիրը՝ Schmidt աւելի լաւ հասկցած է զայն ու լաւ թարգմանած · միայն վերջին բառը — «կթիցի» — ուղիղ չէ թարգմանած, էջ 158, «gesäugt werde» ըսելով, որ պիտի ըլլար «gemolken werde» · նոյն բանը կ'արժէ նաեւ S. Weberի թարգմանութեան մասին, էջ 138 : Հմմտ · նաեւ Բազմավէպ, 1929, էջ 206 : Բնագրին «կթիցի անստինն» խօսքը ո եւ է դիցաբանական իմաստ չունի · Եզնիկ այդ բանաձեւը կը գործածէ՝ պարզապէս ցոյց տալու համար՝ որ լուսինն իբր հսկայ մարմին՝ չի՛ կրնար փոքրիկ կալի մը մէջ իջնալ · այդ ա՛յնպէս անկարելի է, ինչպէս անհնարին է ոչ կաթնատու մը կթել ուզելը : Եզնիկ կը սիրէ այսպիսի դարձուածքներ · հմմտ · «խօսի ընդ որմս», «կագի ընդ հողմս», էջ 207 :

[88] էջ 134 :

*չարժ ի տեղւոջ իւրում, եւ յօրինեաց եդգնա ի մշտադնաց, զիա՞րդ կարիցեն դիւթութիւնք կախարդաց չարժել ի տեղւոյ· քաւ եւ մի՛ լիցի առել մեզ զայս կամ լսել: Եւ ո՞ր տեղի բաւական էր ընդունել զայն»: Յայտնի է որ Եզնիկ Բարսեղի այս հատուածէն որոշ ազդեցութիւն մը կրած է: Սրուանձտեանց[89] Հայ նոր վհուկի մը մասին կը գրէ· «Կորէծ (վհուկը) առե(ր է), թէ երկնուց արեգակն ու լուսնակ, լուսոյ աստղն ու քարվանկորուս աստղ ցածր պիտի իջուցի· չեն աւատացե· աշխար երկիր ժողվեր են Աւանուց չայիր (մարգագետին)· մէկէլ տիսեր են որ արեգակ բոլորակ քանձ սէլի ակն (անիւ) կրակոտ իջեր· լուսնակ սեղանի պէս կլորիկ, աստղերն էլ մէկ մէկ ջաղցի քարի օրինակ խոնարհեր են»: Եզնիկի եւ Բարսեղի նկարագրածին համաձայն կ'ընէին նաեւ թեսաղիացի վհուկները[90], որոնք իբր թէ իրենց կախարդութեամբ լուսինը երկնքէն կ'իջեցնէին: Վիրգիլիոսի[91] վհուկներն աստղներու ընթացքը կը փոխեն:*

*Ընդհանուր դիցաբանութեան[92] մէջ լուսինը կախարդական տեսարաններով միշտ ճոխացած· ո՛չ միայն ինքը տիեզերքի մեծ կախարդը կը համարուի, այլ եւ ամէն կախարդ անոր պաշտպանութեան տակ է, ինչպէս որ Եզնիկի խնդրական տեղիքին մէջ անկնյայտնի կերպով տեսանք: Արդի ժողովրդական հաւատքէն նմոյշ մը շատ լաւ կը պատկերացնէ մեր ըսածը: Բուլանըխի մէջ[93] լուսինը կախարդութեան շնորհքը կու տայ իր թեկնածուին: Յատկապէս սեպտեմբերի լիալուսինը կախարդներուն ուշադրութիւնը կը գրաւէ· ով որ իմաստուն, «ռամդար» (երկրի տակ ծածկուած գանձերը գտնող կախարդ), ապագան գուշակող ըլլալ կ'ուզէ՝ պէտք է սեպտեմբերի լիալուսնին տակ — որ յովալուսին կ'ըսուի — նստի գիշերը, որպէս զի անոր կախարդիչ ազդեցութեան ենթարկուի: Այդպիսի կախարդ կին մը կը պատմէ· «Լուսինն որ տասնուհնգու (եղաւ), հագայ ոտքէ գլուխ կարմիր շորեր, վառուգ (վառած) ճրագ մը դրի գետին, մեծ պղինձ մէ կործեցի վըր ճրագին (ճրագին վրայ պղնձէ խոշոր աման մը շրջեցի), ես լէ(ալ) յէլայ նստայ վըր պղնձին, հայլի մէ առայ ձեռքս, ջրով լիք թաս մէ դրի յառջեւս, պառեկս ոլորի (կոնակս դարձուցի) դէպ ի լուսնակ ու հայլու միջով անթարթ աչքեցի լուսնակին»: Այս անթարթ նայիլն էական պայման է կախարդութեան յաջողելուն համար· նոյն իսկ ժամերով պէտք է անքթիթ նայի վհուկ ըլլալիքը, մինչեւ որ կախարդական արուեստն սկսի գործել, ինչպէս որ յիշուած վհուկը յառաջ տանելով իր նկարագրութիւնը՝ կը պատմէ· «Անթարթ աչքեցի լուսնակին· յառէջ լուսնակ մէկ էր, ես տեսայ, եղաւ երկու, եղաւ երեք, մաղսաթ (վերջապէս) դարձաւ եօթ հատ»: Ապա այս եօթը լուսինները քովէ քով գալով՝ ծովի մը կը վերածուին, որ իր կարգին գետ մը կը դառնայ՝ մազէ կամուրջով եւն եւն: Այս ամբողջ նախափորձերն յաջողութեամբ գլուխ հանելէ յետոյ՝ կախարդութեան հետամուտ կինն այլեւս կատարեալ վհուկ մը կ'ըլլայ[94]:*

5· Լոյս եւ խաւար· *Լոյսի մասին քիչ բան ըսել կրնանք, որովհետեւ Եզնիկ անոր մասին ուղղակի կերպով խօսք չէ ըրած: Նոյնը կ'արժէ նաեւ խաւարի մասին:*

*Քանի մը տեղիքներէ սա ընդհանուր իմաստը կրնանք հանել թէ լոյսն ու խաւարը՝ իրարմէ բոլորովին անջատ գոյացութիւններ են: Երկուքն ալ երկնի եւ երկրի հետ ստեղծուած մարմիններ են՝ իրարու թշնամի:*

---

89 *Մանանայ*, էջ 126:
90 F. Cumont, էջ 170:
91 *Էնէական*, Դ:
92 Ehrenreich, էջ 252:
93 Ազգր· Հանդ·, Զ, էջ 32:

94 *Ամբողջութեան համար նկատենք Եզնիկի նաեւ երկու տեղիքները լուսնի մասին: «Միւսն՝ որ կարի վայելուչն իսկ է ի մէջ արարածոց, որպէս ասեն, Արհմն եղեւ հնարադիւտ լինելոյ: Իբրեւ ետես, ասեն, թէ արարածս գեղեցիկս արար Որմիզդ եւ լոյս չգիտաց առնել, խորհեցաւ ընդ դեւս՝ ասէ· «Զի՞նչ օգուտ է Որմզդի, զի այնպիսի գեղեցիկ արարածս արար՝ եւ ի խաւարի կան, զի լոյս ոչ գիտաց առնել: Արդ եթէ իմաստուն էր,* ընդ մօրն մտանէր, եւ արեգակն որդի լինէր· եւ ընդ քեռն անկանէր, եւ լուսին ծնանէր· *եւ պատուէր տայր՝ զի մի՛ ոք զխորհուրդն ի վեր հանցէ: Զայն լուեալ Մահմեայ դեւի՝ վաղվաղակի առ Որմիզդ հասանէր եւ զխորհուրդն նմա ի վեր հանէր»* (160): «(*Քէշակարկատն Պարսից*) մայրենի եւ քուրական առականօք *զարարած լուսաւորացն մուծանէ ... Քանզի հայեցեալ յազգն արիական՝ թէ իգասէր էր... ըստ նմին օրէնս կցկցեաց... զի յորժամ զաստուածոցն իւրեանց լսիցեն՝ թէ յանարժան խառնակութիւնս մտաբերեցին՝ եւ նոքա... զնոյն անառակութիւնս անխտիր գործեսցեն»* (142): *Այս մասին անդրադոյն ծանօթութիւններ տալու հնարաւորութիւնն ապագային կը յուսանք թէ կ'ունենանք:*

*«Եւ զաճելն եւ նուազել լուսնի՝ իբրեւ ընդ պատենիւք իմն մտանել եւ ելանել ասեն իմաստունք: Եւ նշանս անտի տան, զի է երբեք՝ յորժամ յաճմունսն իցէ եւ ընլոյն, շուրջ զանօթովն ծանրանայ (իմա՝ ծրանայ), որպէս թէ ընդ սակաւ ինչ փեռեկումն ծերպից՝ նշոյլք երեւեսցին»* (246): *Այս տեղիքն ալ մասնաւոր ուշադրութեան արժանի է:*

ա. «Նուրբ է տարր լուսոյ, այլ դի ակամբ զննի՝ մարմնաւոր է» (112): «Երկու հակառակք իրերաց՝ միմեանց ծախիչք են, որպէս խաւարի լոյս» (75): «Եւ դի ընդ օդս հուր խառն է, ի փայլատականցն՝ որ ի չփելոյ ընդ միմեանս հողմոյն եւ ամպոց արձակին՝ յայտ յանդիման ցուցանի(ն): Եւ դի ընդ ջուրս հուր խառն է, ի քարանցն հանելոյ (իմա՝ հանելոց) ի ջրոյ՝ զոր ընդ միմեանս չփիցեն եւ հանիցեն հուր, յայտ յանդիման ցուցանի: Եւ գիշերի, յորժամ առ ծովեզր կայցես եւ զջուրն ժքթիցես, նշոյլք, լուսոյն հատանին» (252—253): Ուստի՝ լոյսը տարերային բան մըն է, որ նաեւ ջուրի եւ քարի մէջ կը գտնուի: Լոյսը սերտ աղերսի մէջ դրուած է կրակի հետ, եւ իրականին ալ մին չի կրնար մտածուիլ առանց միւսին: Ռիգվեդայի[95] Ագնին հուրի աստուածութիւն է, բայց ունի նաեւ լուսային տեսադծեր: Եզնիկի ըմբռնումին հանգոյն՝ Ագնի ալ ջուրերու եւ երկրի մէջ կը գտնուի. իբրեւ կայծակ թաց ամպերու մէջ կը կենայ. եւ որովհետեւ մթնոլորտի մէջ տեսնուած կայծակի լոյսը՝ ծովերու մէջ կը ցոլանայ, ջուրերն ալ անոր բնակութեան տեղերն են: Այդ մի եւ նոյն հուրն ու լոյսը երկրի վրայ՝ կը գտնուի քարերուն եւ փայտերուն ծոցը, ուր Ագնի քնացած կը համարուի:

բ. Այս հայեացքներուն մէջ հին արիական հաւատքի ամէնէն յատկանշական հաւատալիքները կը տեսնենք: Անոնցմէ մին է նաեւ խաւարի մասին Եզնիկի գրածը. «Ոչ զհրոյ եւ ոչ զջրոյ եւ ոչ զօդոյ եւ ոչ զփայլատականց եւ ոչ զորոտմանէ եւ ոչ զխաւարէ ճառէ ինչ Մովսէս, զորս յերկուց ի մեծ անօթոցն, յերկնից եւ յերկրէ, պարտ է իմանալ՝ թէ ամենայն ինչ որ ի միջի նոցա գտանի՝ հարկ է դի ընդ նովին արարեալ իցէ. ըստ այնմ՝ թէ Արար Աստուած զերկինս եւ զերկիր եւ զամենայն որ ի նոսա» (223—224): Խաւարը ինքնակաց գոյացութիւն մըն է, որ տիեզերքի վրայ կը տիրէ՝ եթէ չըլլայ արեւն ու իր լոյսը. «(Արեգակն) իբրեւ ճրագ մի ի մեծի տան՝ ի մէջ ձեղուան եւ յատակի լուցեալ՝ առ ի զխաւարն եւ զստուերն զերկուց մեծաց անօթոց ի բաց ի միջոյ փարատելոյ» (17): Արեգակն ալ իր կարգին՝ կը փախչի խաւարէ եւ ասպարէզն անոր առջեւ կը ձգէ. «Զիա՞րդ պաշտիցեմք զարեգակն, որ . . . տայ տեղի խաւարին ընուլ զմիջոց ի մեծի տանն (= տիեզերաց)» (18): Սուրբ Գիրքն[96] արդէն լոյսն ու խաւարը՝ իբր առանձին առանձին գոյացութիւններ կ՚անջատէ իրարմէ. «Եւ մեկնեաց Աստուած ի մէջ լուսոյն եւ ի մէջ խաւարին. եւ կոչեաց Աստուած զլոյսն տիւ եւ զխաւարն կոչեաց գիշեր»: Նման հաւատալիքներ ունէին նաեւ Բաբելացիները: Լոյսի եւ խաւարի այս բացարձակ հակառակութիւնն ու անջատումը՝ պայմանաւորուած է գլխաւորապէս երկարմատեան կրօնքէ. եւ որովհետեւ իրանական հաւատքը բո՛ւն երկուորական կրօն մը է, մասնաւորապէս անոր մէջ ուժգնօրէն շեշտուած կը տեսնենք լոյսի եւ խաւարի հակադրութիւնը[97]: Յաւիտենական լոյսի դիմաց՝ յաւիտենական խաւար դրուած է եւ իւրաքանչիւր լուսաւէտ աստուածութեան դէմ՝ աղջամուղջի ոգի մը դիրք բռնած է: Լոյսն Արամազդի արարչագործութեան կը վերաբերի, իսկ խաւարն՝ Արհմնի. անոնք այդ երկու աստուածութիւններու տէրութեան սահմաններուն վրայ կեցած կը համարուին: Յոբի[98] ալ ծանօթ է թէ լոյսն ու խաւար որոշ երկիր մը կամ տեղ մը կը գտնուին. «Զի՞նչ երկիր իցէ յորում լոյսն ագանիցի, կամ զի՞նչ տեղի խաւարին»: Իսկ Երեմիա[99] կ՚ըսէ. «Եւ հանէ Աստուած զլոյս յըշտեմարանաց իւրոց»:

6. Դրախտ եւ դժոխք: Տեսանք որ Եզնիկ տիեզերքն իր այլեւայլ մասերով ի՛նչպէս ներկայացուց՝ համաձայն ժողովրդական հաւատքին: Այդ ռամիկ հայեացքին համեմատ՝ դրախտն ու դժոխքը մաս կը կազմեն տիեզերքին:

ա. «Եւ դրախտն ոչ եթէ յերրորդ երկինս իցէ եւ կամ բնաւ ի յերկինս ուրեք, այլ յերկրի. զոր եւ ինքեանք իսկ վկայեն՝ թէ իբրեւ արարին զմարդն, ի դրախտի անդ եդին, որ է յերկրի եւ ո՛չ յերկինս» (300): Ըստ երեւոյթին եբրայական ազդեցութեամբ գոյացած է հայեացքս, թէ դրախտը երկրի վրայ է. բայց եթէ ընդհանուր դիցաբանութեան խորհուրդ հարցնենք, կը համոզուինք, որ համատարած հաւատալիքի մը հետ է որ գործ ունինք: Պէտք ենք մատնանիշ ընել, որ Եզնիկի գծած պատկերն ամբողջական

[95] Orelli, II, էջ 25:

[96] Գիրք ծննդոց, Ա, 4—5:
[97] Spiegel, II, 17—18:
[98] ԼԸ, 19:
[99] ԾԱ, 16:

չէ· չ'ըսեր՝ թէ երկրի ո՛ր կողմն է դրախտը: Հոս ալ համեմատական դիցաբանութիւնը մեզի աղէկ կ'օգնէ եւ կ'ըսէ թէ արեւե՛լք է դրախտին տեղը: Արեւելք ըսելով՝ առաւելապէս հասկնալու է արշալոյսի տեղը կամ արեւու ծագման անմատչելի սահմանագաւառը· վասն զի դրախտը շատ ազգերու ըմբռնումով՝ այդ անմատչելի արեւագաւառին մէջ կը գտնուի: Բնական է Delitzsch[100] ինք զինքը ծանրապէս կը պարտաւորէ դիցաբանութեան առջեւ, երբ կը մերժէ դիցաբանական այս ընդհանուր հայեացքը եւ կը պնդէ, որ «արեւելք ընդհանուր իմաստ մը ունի սուրբ Գրքի մէջ («տնկեաց Աստուած զդրախտն յեդեմ ընդ արեւելս»)· արեւելք՝ պատմողին եւ իր ժողովուրդին կեցած երկրին յարաբերութեամբ, այսինքն Պաղեստինի արեւելեան կողմը»: Եղիշէ կը գրէ[101]. «Զդրախտն ոչ յերկինս այլ յերկրի ասաց բանն՝ տնկեալ յԵդեմ ընդ արեւելս, թէպէտ եւ այժմ ծածուկ է ի մէնջ:... Զի Աստուած փակեաց զճանապարհս նորա· ոմանք ասեն թէ յարեւելից կողման՝ ծովով իբրեւ զկղզի ինչ արգելեալ է»: Վարդան վարդապետ[102] ալ կարծեկից է Եզնիկի· «(Դրախտն) կայ ընդ արեւելս, յերկրի արմատացեալ ի կատարս լերինն բարձու, որ հաւասար է լուսնի... ուր ո՛չ ներգործէ արեգակն, տիւ եւ գիշեր· այլ յարփւոյն պայծառանայ եւ կամ նշողիւք փառացն Աստուծոյ»: Հոս առերեւոյթ հակասութիւն մը կայ մեր վերն ըսածներուն հետ· Վարդան արեւը կ'արտաքսէ դրախտէն եւ տեղն արփին կը դնէ: Մենք աւելի վերը (Թիւ 3· Արեւ) տեսանք, որ արեւն ու արփին սերտ աղերսի մէջ են եւ երբեմն կը նոյնանան իրարու հետ: Ուստի Վարդանի քով արփին փոխանակած է արեւը: Սլաւներու[103] արքայութիւնը կը գտնուի արեւատան (Sonnenwohnung) մէջ՝ արեւելք, ուր երանութեան կղզիները կան, պատկեր մը որ շատ նման է Եղիշէի վերը յիշուած տեղիքին:

[100] Dr. F. Delitsch, Wo lag das Paradies? Leipzig 1881, էջ 7:

[101] Էջ 28 եւ 59: Բնագրիս տակը դրուած թարգմանութիւնը հետեւեալն է· «le Verbe nous révèle qu'il a été transplanté du paradis non pas au ciel mais sur la terre dans l'Éden à l'orient»· ինչպէս կը տեսնուի սխալ է այս թարգմանութիւնը, որ ըստ ինքեան պիտի ըլլար· «le Verbe nous révèle que le paradis n'est pas au ciel mais sur la terre, planté dans l'Éden à l'orient».

[102] Էջ 5:

[103] Orelli, II, 355:

Բ· Եզնիկի դրախտին կից պէտք ենք զետեղել «Անոյշք»ը, որ մեր մատենագրին քով միայն մէկ անգամ կը յիշուի, բայց այնպէս պայծառ ու հասկնալի կերպով, որ ինքն իրմէ բաւական է մեզի աւանդելու՝ հինաւուրց հաւատալիքի մը թանկագին մնացորդը: Խնդրական տեղիքն ամբողջութեամբ յառաջ բերելն անհրաժեշտ է· «(Փիլիսոփայք Յունաց) զշունչն անարար, անմահ եւ աստուածեղէն՝ յԱստուծոյ բնութենէ առնի ասեն. եւ դարձեալ տանջանս եւ պատիժս շնչոցն յանցուցելոց դնեն, որ յետնոյ հայհոյութեան է եթէ էութիւն Աստուծոյ ի մասունս բաժանիցի եւ ի բազում շունչ կոտորիցի· եւ դարձեալ զիւրոյ զկէս բնութիւնն միւս կէսն տանջիցէ, եւ կէսն ի փառս եւ կէսն յանարգանս, եւ մի թերին յանոյշս եւ միւս թերին ի դժոխս» (241): Խօսքին իմաստը շատ պարզ է· յոյն փիլիսոփաներէն ոմանք կը կարծեն թէ միակ աստուածութեան հոգին ամէն կենդանի եւ անկենդան արարած կը կենսաւորէ: Այս վարդապետութեան անհեթեթութիւնը ցոյց տալու համար՝ Եզնիկ վեր կը հանէ այն պարագան, որ ամենակենդան աստուածութեան հոգին՝ հաւասարապէս պէտք է գտնուի թէ՛ տանջուող՝ «ի դժոխս» հոգիներու եւ թէ՛ երջանիկ — «յանոյշս» ապրող — հոգիներու մէջ: Անոյշքը հին բառ մըն է, որով մեր նախահայրերը կը հասկնային ա՛յն, ինչ որ այսօր մենք կը հասկնանք «արքայութիւն, երկինք, փափկութեան դրախտ, Եդեմ» բառերով: «Անուշ» արմատով կառուցուած շատ մը բառեր ունինք, որոնք Եզնիկի այդ բառով կ'ընդունին իրենց իսկական իմաստը[104]:

Դժոխքն իբրեւ տեղերքի մաս չէ գրաւած Եզնիկի ուշադրութիւնը: Անոր համար չենք կրնար այս մասին ծանրանալ:

*

Այս առաջին հատուածին մէջ՝ Եզնիկի հաղորդածներն հետեւեալ տողերու մէջ կրնանք ամփոփել·

1· Երկինքը երկու կամ երեք հատ է:

2· Աստղերը մարդուն ծննդեան ու մահուան ժամանակը կը վճռեն: Անոնք ճակա-

[104] Տե՛ս Հրաչեայ Աճառեան, Արմատական բառարան, «Անոյշք»:

*տագրական ազդեցութիւն ունին մարդուն մարմնոյն վրայ. նոյնպէս աստղներէն կախուած է անոր բախտը։ Կը շնորհեն իշխանութիւն, ոյժ, գեղեցկութիւն, հարստութիւն, եւ ասոնցմէ զատ՝ նաեւ վնասակար յատկութիւններ։ Այսպէս ճակատագրին վրայ կ'ազդեն աստղները, վասն զի ո՛չ միայն կենսունակ են, այլ նաեւ գերբնական էակներ։*

3. Արեւը *գիշերուան ընթացքին հիւսիսային լեռներու ետեւէն կ'անցնի եւ երբ առտու անոնց ետեւէն կ'ելլէ, լոյս կ'ըլլայ երկրի վրայ։ Կամ. Գիշերը (գոց) տեղ մը կը մտնէ կը ծածկուի. եւ այդ տեղը կա՛մ երկրի ընդերքն է (սանդարամետ) կամ ծովը։ — Արեւը (գերագոյն աստուածութեան) աչքն է եւ միանգամայն երկնային դատաւոր։ — Իբրեւ առարկայ՝ անիւ մըն է ան։ Արեւմուտքը խաւարի, մահուան եւ սատանայի տեղը կը համարուի։*

4. Լուսինն *ամէն ամիս կը մեռնի եւ վերստին կը ծնանի, անոր համար մահուան եւ յարութեան աստուածութիւն է։ Իբրեւ բուսականութեան եւ երկրի աստուածութիւն կը տիրէ բուսական եւ կենդանական աշխարհներուն։ Լուսնոտութիւնը յառաջ կու գայ դեւէ մը, որ լուսնի հետ յարաբերութեան մէջ է։ Վհուկներն իրենց կախարդութեան շնորհիւ՝ կրնան լուսինն երկիր իջեցնել, եւ այն ատեն լուսնի խաւարում տեղի կ'ունենայ։*

5. Լոյսն ու խաւարը *տիեզերքի մէջ կան իբր ինքնակաց առանձին գոյացութիւններ։ Իբր զիրար հալածող մարմիններ՝ փոխն ի փոխ կը տիրեն երկրի վրայ՝ ցերեկուան եւ գիշերուան ընթացքին։ Լոյսը կը գտնուի նաեւ ջուրերու եւ քարերու մէջ։*

6. Դրախտը *ո՛չ թէ երկնքի մէջ կը գտնուի, այլ երկրի վրայ։* (Delitsch *կը սխալի՝ երբ կը համարի թէ դրախտն արեւելք է ըսելով [ըստ Ս. Գրքին] իւրաքանչիւր երկրի համաձայն արեւելք — ուստի յարաբերական իմաստով — հասկնալու է։) Անոյշքը երկինք կամ արքայութիւն է։*

## բ. Երկիր։

7. *Մինչեւ հիմա զբաղեցանք Եզնիկի ա՛յն տեղիքներով, որոնք հաստատութեան, աստղներու, յատկապէս արեւու եւ լուսնի, լոյսի եւ խաւարի, անդէնական աշխարհի կը հային։ Այս նիւթերը նկատեցինք իբրեւ տիեզերքի մասեր. երկիրն ալ տիեզերական ամբողջութեան մէկ հատուածն է, որ հոս մեր ուսումնասիրութեան առանձին կերպով ատաղձ պիտի մատակարարէ։ Երկիրը պիտի քննենք իր ձեւովն ու դիրքով, եւ ասոր պիտի կցենք անոր բներեւոյթներուն վրայ մեր հեղինակին խնդրական տուեալները։*

ա. Երկրի դիրքին եւ ձեւին վրայ *շատ պայծառ գաղափար մը չի տար Եզնիկ։ Յատկապէս այս նիւթին մէջ սուրբ գրական ազդեցութեան ենթակայ կը մնայ եւ չի համարձակիր իրեն կամ ռամկին ըմբռնումներն յայտնել։ Թէ՛ կ'ընդունի՝ որ* ոչնչի վրայ կեցած է երկիրը *եւ թէ՛ կը համարի՝ որ* ջուրի մէջ է։ *Առաջին տեսակէտին համար յառաջ կը բերենք հետեւեալ հատուածները. «(Աստուծոյ բանն) կացոյց (զերկիր) ի վերայ ոչնչի։ Եւ որ երկմտիցէ ոք՝ թէ զիա՞րդ կարիցէ այսչափ ծանրութիւն ի վերայ ոչնչի կալ, հայեցեալ յերկնիցն հաստատութիւն՝ որ ոչ ի վերայ իրիք կայ, եւ հաւանեսցի՝ թէ որ զերկինս բանիւ հաստատեաց ի վերայ ոչնչի, նոյն եւ զերկիր կացոյց ի վերայ ոչնչի. եւ նորին հրամանն ունի եւ զերկոսին անշարժս եւ եւտեղակալս* (218, 221—222)։ *Երկիր ի վերայ ոչնչի կայ հաստատեալ»* (20)։ *Այս հայեացքին կից՝ Եզնիկ չի վարանիր ըսելու՝ թէ ջուրի վրայ հաստատուած է երկիրը։ Վերջին տեսակէտս ո՛չ միայն սուրբ Գրքի մէջ կայ, այլ եւ ժողովրդական հաւատալիք է։ Անոր համար ռամիկը կ'առարկէ Եզնիկի. «(Եւ այլ եւս ասեն.) Թէ ի վերայ ոչնչի կայ երկիր, զիա՞րդ ասէ Դաւիթ՝ թէ հաստատեաց զերկիր ի վերայ ջուրց, եւ դարձեալ՝ թէ ինքն ի վերայ ծովու արկ զհիմունս նորա, եւ ի վերայ գետոց պատրաստեաց զնա»* (222)։

*Այս երկրորդ հայեացքը գրեթէ համաշխարհային է տիեզերական դիցաբանութեան մէջ. երկիրը ջրոյ մէջ ու ջրով շրջապատուած կը համարուի։ Այս մասին Եզնիկ դեռ երեք տեղիք ունի։ Ժողովուրդը կը համարի, որ երկիրը ջրով պատած է. բայց Եզնիկ կողմը չէ այս ըմբռնումին. «Եւ դարձեալ ո՛չ որպէս ասենն է՝ եթէ զերկինս (ուղղէ՛ «զերկիրս») ջուր պատիցէ. այլ ընդ երկիր եւ ի վերայ երկրի են ջուրք. եւ ըստ երկիր անդր ոչինչ է եւ ոչ եթէ ջուրք։ Եւ վկայեսցեն նոցա Հերակլի արձանքն՝ յորս գրեալ է, ասեն, թէ յայսմ վայրէ ոք անդր մի՛ ժտեսցի եր-*

թալ» (251)։ Քիչ մը յառաջ յիշուած սուրբ գրական երկու հայեացքները հաշտեցնելու նպատակով՝ կը գրէ մեր հեղինակը․ «Եւ առ օրինակ ի մարմնոյ․ որոյ ի վերայ մորթ եւ միս է, եւ ի միջի երակք եւ խողովակք արեան եւ ի ներքոյ դարձեալ նոյնպէս մորթ եւ միս․ եւ է մարմին եւ (ի) վերոյ քան զերակսն։ Ըստ նմին օրինակի եւ երկիր ի վերայ ջրոց է։ Քանզի ի միջի իւրում ունի զջուրս, եւ ի ներքոյ քան զջուրս․ եւ ի վերայ ոչնչի հաստատեալ կայ եռեղակալ, եւ ունի յինքեան զամփոփ զլոյծ բնութիւն ջրոցն։ Եւ երկոցունց մարգարէութեանցն մի եւ նոյն դիտաւորութիւն է եւ չիք այլաբանութիւն ի միջի» (227—228)։ Նոյն հայեացքին հետ շատ նման է յոյներու շինած պատկերը, զոր կու տայ Եզնիկ․ «Եւ երկինք, ասեն (յունաց իմաստունք), որչափ ի վեր են՝ դոյնչափ ի խոնարհ են, եւ դոյնչափ յամենայն կողմանց շուրջ զերկրաւ, եւ զերկիրս շուրջ ջուր պատէ, եւ զջուրն եւ զերկիր՝ օդ, եւ զօդն եւ զջուր եւ զերկիր՝ հուր» (230)։

Վեդայական բազմաթիւ տեղիքներ [1] կան այս հայեացքիս մասին․ Պարսիկներու [2] համաձայն ո՛չ միայն իւրաքանչիւր երկինք ծովով պարուրուած է, այլ եւ երկիրը։ Ինչպէս արդէն Եզնիկի քով տեսանք, Հերակղի արձանները երկրի արեւմտեան սահմանը կը մտածուէին յոյներու եւ հռովմէացիներու քով․ նոյնը կը հաստատէ Կուրտիոս Ռուփոս [3] երբ խօսք կ՚ընէ Աղեքսանդր Մեծի յետին արշաւանքի մասին, որ զայն երկրիս արեւելեան ծագը՝ ովկիանի եզերքն հասցուցած էր։ Այս հաւատքը կ՚ակնարկէ Բարսեղ [4] Կեսարացի, երբ կը գրէ․ «Ծովն անուանեալ երեկորնեայց ․․․ սահմանակալ մտիցն արեւու է»։ Հոմերոս կը հաստատէ որ երկիրը շրջապատուած է ովկիանոսով։ Մեր երկրին սահմանէն անդի խաւարի եւ մահուան տիրապետութիւնն է։ Նոր Բայազէտցիներն [5] ալ կը հաւատան, որ երկիրը ջրապատ է․ այդ ջուրը Մեռեալ ծով կամ ովկիանոս կը կոչուի։ Նոյն հաւատքն ունին նաեւ Ալաշկերտցիները [6]։

բ․ Ձեւի տեսակէտով՝ տափակ է երկիրը։ Եզնիկ ուղղակի կերպով չ՚ըսեր՝ թէ երկիրը հարթ է․ բայց իր այլ եւ այլ կտորներէն կրնանք այն գաղափարը կազմել, որ երկիրը տափակ է, որուն վրայ խուփի նման կեցած է երկնակամարն՝ իբր հաստատուն մարմին մը։ Մեր նախապէս յիշած տեղիքներուն (426) կը կցենք նաեւ հետեւեալները, որ այս պատկերն աւելի կը հաստատեն։ «Եւ ոչ երկինք շրջին, զորմէ ասեն արտաքին իմաստունքն՝ թէ մերթ ի շրջելն ծածկեն զլուսաւորսն, եւ մերթ յայտնեն։ Եւ եթէ զամենայն օր շրջիցին՝ զի՞արդ զարեւն աւուր աւուր ի նոյն արեւելս ածիցեն եւ զլուսին յամսեան հազիւ ի նոյն տեղիս։ Եւ այլ եւս աստեղք են, որ ի տարւոջ հազիւ մի անգամ հասանեն ի նոյն տեղի․ եւ են, որ որպէս ասենն, յերկոտասան ամ ի նոյն տեղի․ եւ է, որ ի տարւոջ եւ ի կիսում․ եւ է, որ յերեսուն ամի։

«Այլ ի փորձ իրացն այլազգ յայտ առնի։ Զի աստեղքն, որք զցայգ յերկինս են, եւ զցերեկ անդէն գտանին․ թէ երկինք շրջէին, ոչ ի նոյն շաւիղս՝ յորս ցայգն տեսանէաք՝ ի նոյնս եւ զցերեկն գտանէին․ այլ քանզի ընդ նոյն շաւիղս գնան, որպէս եւ տեսանեմք իսկ եւ զլուսին եւ զաստեղս ի նոյն շաւիղս, յայտ է՝ թէ նոքա գնան, եւ երկինք կան անշարժ եռեղակալք։ Որպէս եւ աստուածատուր իսկ գիրք հաստատութիւն կոչեն զերկինս։ Եւ որ ինչ հաստատութիւնն է, չէ շարժուն» (215—216)։

գ․ Շատ ուշագրաւ է երկրի եւ երկնի մեծութեան մասին Եզնիկի յայտնած միտքը։ «Եւ ի զուր է ճամարտակելն նոցա, զի այնչափ մեծութիւն երկնից տան քան երկրի․ զի աստուածատուր գիրք զերկինս թզաւ ասեն եւ զերկիր քլաւ [7]․ եւ ոչ աւելի զթիզն քան

---

[1] Orelli, II, 80։

[2] Spiegel, I, 118։

[3] Վարք Աղեքսանդրի մեծի, Թ․ եւ Ժ․ դպրութիւն։

[4] Վեցօրեայք, 73։

[5] Ազգ․ Հանդէս, XVII, 91։

[6] IX, 264։

[7] Թիզ եւ Քիլ բառերու գործածութեան եւ Եզնիկի այս տեղւոյն բացատրութեան մասին Մեծ․ Հ․ Ն․ Ակինեան հետեւեալ տողերը կը հաղորդէ ինծի․ «Ս․ Գրքի թարգմանութեան վրայ-յեցած՝ դժուար է թիզ եւ քիլ բառերու չափական ճշգրիտ նշանակութիւնը առնել։ Թիզ կը համապատասխանէ Եօթանասնից թարգմանութեան σπιθαμή, Ելք․ ԻԸ․ 16 (= Եբր․ sereth)․ Դատ․ Գ․ 16 (= Եբր․ gomed)․ Ա․ Թագ․ Ժէ․ 4․ Ես․ Խ․ 12 (= Եբր․ tephach) եւ παλαιστή Գ․ Թգ․ Է․ 26 (= Եբր․ tepach)․ Բ․ Մնաց․ Դ․ 5․ «Եւ թանձրութիւն ծովուն թզաւ»․ միւս հին թարգմանութիւնն ունի․ «ուղուկ մի» (տպ․ Մոսկուա 1899, էջ 59)․ Եզեկ․ Խ․ 5 (= Եբր․ sereth) բառերուն։ Παλαιστή Ել․ ԻԵ․ 25, ԼԷ․ 12, Եզեկ․ Խ․ 43, ԽԳ․ 13 հայացուած է ուղկեան եւ ուղուկ։ Յունարէն կրկին բառերը կը նշանակեն թիզ սովորական իմաստով, մինչ Եբր․ tephach չորս մատ երկարութիւնն է, sereth երեք թիզ երկարութիւնը, եւ gomed գիրկ կամ կանգունն է։ Քիլ, զոր ունի Ես․ Խ․ 12, Եօթանասնից δράξ, «ափ» բառին թարգմանութիւնն է, ուր Եբր․ ezba «մատնաչափն» է։ Քիլ, որուն ստուգաբանական ծագումը անծանօթ է,

զքիլն գտանեմք» (246)։ Այս խօսքէն պիտի եզրակացնենք, որ երկնակամարն իբրեւ թանձր մարմին՝ երկրին հաւասար է։

Երկրափակ ովկիանոսը համաշխարհային դիցաբանութեան ընդհանուր մէկ ըմբռնումն է։ Գրեթէ միշտ՝ այդ ծովէն անբաժան կը նկատուի առասպելական հսկայ կենդանի մը, իբր օձ կամ ձուկ, որ այդ ծովուն մէջ կը մտածուի եւ իր վիթխարի մարմնոյն օղակով՝ գալարած կ'ենթադրուի երկրի չուրջ։ Անոր գլուխը գրեթէ հասած է պոչին ծայրը, զոր անարի ստղունը խածնել կը ջանայ։ Բայց ամէն անգամ, որ ճիգ կ'ընէ երախը պոչին մերձեցնելու — զոր օտարի մը պոչը կը կարծէ — եւ խածնել կ'ուզէ զայն, միաժամանակ թէ՛ գլուխն ու թէ՛ պոչը կը շարժէ, որով իր նպատակին չի հասնիր։ Այս շարժումը, որ միացած է ոստումի մը՝ սաստիկ կը դղրդէ երկիրն ու ծովը եւ երկրաշարժ յառաջ կը բերէ։ Եթէ այդ կենդանին յաջողի խածնել իր պոչը, աշխարհիս կատարածը կու գայ։

Եզնիկ այս մասին ո եւ է ակնարկութիւն չ'ըներ։ Բայց մենք իրաւացի կերպով կրնանք ենթադրել, որ յիշուած օձը կամ ձուկն իրեն ժամանակ ալ իբր իրական կը մտուածուէր ովկիանոսին մէջ, որուն մասին Եզնիկ ինքը յիշատակութիւն կ'ընէ արդէն։ Եղիշէի[8] ծանօթ է այս հայեացքը, զոր մերժել կ'ուզէ՝ ըսելով. «Եւ շարժումն երկրի ո՛չ է ի կիտէն

կ'երեւայ թէ Ե. դարուն համազօր էր թիզի չափական կիրառութեան մէջ. այս բացայայտ կը տեսնուի Եզնիկի խօսքերէն երբ կը գրէ. «եւ ոչ աւելի զթիզն քան զՖիլն գտանեմք»։ Այս ըմբռնումն ունի նաեւ Փիլոն Եբրայեցւոյ հայ թարգմանիչը, որ ըստ ամենայն հաւանականութեան Եզնիկի ժամանակակից է. Փիլոն բացատրելով Ելից ԻԸ. 16 կը գրէ. «թզաւ երկայնութիւնն եւ թզաւ լայնութիւնն վասն այնորիկ, զի Ֆիլ վեցերորդ մասն է կանգնի. քանզի կանգուն վեցաՖլեան է. զի վեցերորդն մի՝ երկայնութեամբ եւ լայնութեամբ (Փիլոն, Մեկնութիւն Ելից, Բ. § ՃԺԱ, էջ 540, տպ. Վենետ. 1826)։ Յովհ. Ոսկեցերանի վերագրուած Եսայեայ Մեկնութեան հայերէն թարգմանութիւնը Ես. Խ. 12 համարը մեկնելով կը գրէ. «ոչ երկինք թզաւ չափեցան եւ ոչ երկիր ՙքլաւ. զի չիք չափ ինչ հանգոյն անբովանդական ձեռին... Եւ արդ մեծ իցեն երկինք քան զերկիր՝ ամենայն ումեք յայտնի է. քանզի իբրեւ վերարկու են երկինք՝ երկրիս» (տպ. Վենետ. 1880, էջ 259—260)։

Հայկական մղոնաչափերու համեմատ ալ զիրկը վեց թիզ (իբր $0{\cdot}266^{1}/_{3}$ մետր) է. Յ. Մանանդեան, Կշիռները եւ չափերը հնագոյն հայ աղբիւրներում. Երեւան, 1930, էջ 117—120), ինչպէս կանգունը վեց ֆիլ է ըստ Փիլոնի։ Ֆիլ յաջորդ դարերուն տեղի տուած է թիզին։ Մանանդեան խօսք չէ ըրած ֆիլի մասին։

Ներկայիս թիզ ձեռքի բացուածքին ըթմատէն մինչեւ ծկոյթ տարածութիւնն է, իսկ ֆիլ ըթմատի եւ ցուցամատի մէջ եղած բացուածքը (հմմտ. Աճառեան, Արմատական բառարան թիզ բառը)»։

որ ի ջուրս»։ Վարդան վարդապետ իր «Աշխարհացոյց ամենայն տիեզերաց» երկին մէջ[9] կը գրէ. «Չորս տարերքն... գնդաձեւ պատեալ են զմիմեանս։ Առաջին բոլորակութիւն հրոյն, որ պատեալ ունի զամենայն տարերս. եւ ապա օդն, եւ ապա ջուրն, եւ ապա երկիրս՝ ի ներքոյ ամենայնի եւ ի մէջ ամենեցուն։ ... Եկեսցուք յերկիր. այլ նախ տեսցուք զի կիրիկոնաձեւ է աշխարհս, բոլոր եւ քառանկիւնի (?). եւ դրախտն աղամայ ի վերայ երկրի է, ի բարձրաբերձ բեմբի, եւ չորս իրք պատեալ է զդրախտն եւ զցամաք երկիրս։ Նախ Ովկիանոս ծովն եւ Լեւիաթան[10] ձուկն, ընդդէմ կալով կոհակացն Ովկիանու. եւ ի կողմն արեւմտից զտուտն եւ զգլուխն ի միատեղ է եդեալ... Այլ յՈվկիանոս ոչ գոյ կենդանի՝ բաց ի Լեւիաթանէն, եւ ամէն օր երեք մեծ վիշապ ձուկ՝ կերակուր առաքէ նմա Աստուած»։ Արդէն յիշեցի թէ Նոր Բայազէտի հայերը[11] կը հաւատան երկրափակ Ովկիանոսի գոյութեան. հոն մշտական խաւար կը տիրէ եւ կենդանութեան նշան չկայ՝ հսկայ ձկէ մը զատ, որ երկիրը կը պատէ եւ պոչը խածնել կ'ուզէ՝ աշխարհը կործանելու համար։ Ալաշկերտցիներն[12] աւելի կը զարգացնեն այս պատկերն՝ ըսելով, որ եր-

[9] Բազմավէպ, 1887, էջ 135։

[10] Այս Լեւիաթան անունը ծանօթ է նաեւ արդի ժողովրդական հաւատքին։ Եբրայեցերէն բառ է, որ «վիշապի ընկերութիւն» կը նշանակէ եւ կ'երեւայ թէ մեր ակնարկած առասպելական վիշապն ըլլալու է։ Իբրեւ Լեւիաթան՝ հին կտակարանի մէջ երեք տեղ կը յիշուի եւ նոյն իսկ կը նկարագրուի Յոբի քով. «Ահաւասիկ ոյժ իւր զմիջով իւրով, եւ զօրութիւն զպորտիւ որովայնի իւրոյ։ Կանգնեաց զտուտն իւր իբրեւ զնոճի. ջիլք իւր զմիմեամբք պատեալ. կողք իւր պղնձիք, եւ ողն իւր ձոյլ երկաթոյ։ Նա՛ է սկիզբն արարածոց Տեառն, արարեալ խաղալիք հրեշտակաց նորա։ Հանեալ ի վերայ առապար լերին, արար խնդութիւն չորքոտանեաց ի տարտարոսն։ Ընդ ազգի ազգի ծառովք ննջէ... Հովանոցանան ընդ նովաւ ծառք մեծամեծք հանդերձ անտառօք... Եթէ լինիցի հեղեղ, ո՛չ զգնասցէ։ Յանձնապաստան է, զի թէ Յորդանան դիմեսցէ ի վերայ նորա, յակնակապիճս իւր ընկալցի զնա։ Ի խուսափել նորա ծակիցե՞ս զռնգունս նորա։ Վերացուցանիցե՞ս զվիշապն կարթիւ. դնիցե՞ս պախուցս չուրջ զցռկով նորա։ Եթէ կապիցե՞ս անուր ի քիթս նորա. անցուցանիցե՞ս ղանդանաւանդ ընդ կզակս նորա։ ...Ամենայն նաւալուղակն ի մի վայր ժողովեալ, ո՛չ բարձցեն թեփ մի ի տանոյ նորա, եւ ի նաւս ձկնորսաց խալամ նորա։ Դնիցես դու զձեռն քո ի վերայ նորա. յիշատակեալ զպատերազմ, որ լինելոց է ի մարմնի նորա, զի այլ ո՛չ եւս լինիցի», Խ. 11—28։ Նոյնպէս Լեւիաթան է «մեծ վիշապն», Յովբ, Գ, 8 եւ Ես. Իէ, 1—2, ուր կ'ըսուի. «Յաւուր յայնմիկ ածցէ Տէր զսուրն սուրբ եւ զմեծ եւ զհզօր ի վերայ վիշապ օձին փախուցելոյ, եւ ի վերայ վիշապ օձին կամակորի. եւ սպանցէ զվիշապն ի մէջ ծովուն»։

[11] Ազգ. Հանդ., XXVII, 91։

[12] IX, 264։

կրափակ ձուկը Լեւիաթան կը կոչուի եւ միշտ կը ճգնի պոչը խածնել, որ բերնէն միայն մէկ թզաչափ հեռու կը գտնուի. անոր ըրած ոստումներէն՝ երկրաշարժ կ'ըլլայ: Գլխուն վրայ մեծ ադամանդ մը կայ, որ գիշեր ցորեկ իր լոյսով կ'առաջնորդէ անոր, վասն զի հոն չի հասնիր արեւու լոյսը: Պարզկայ գիշերներ կը տեսնուի այդ լուսատու գոհարին փայլը՝ մա՛նաւանդ հիւսիսային հորիզոնին վրայ: Բորչալուցիները[13] Լիկիոն կը կոչեն խնդրի նիւթ կենդանին, զոր իբր օձ կը նկատեն՝ Համշէնցիներու[14] հետ: Եգիպտացիները[15] տիեզերքը պատկերացնելու համար քառաթեւ խաչ մը (աշխարհիս չորս ծագերը) օձով մը կը շրջապատէին, կամ՝ նոյն բանը կը նշանագրէին օձով մը, որ ինքն իր պոչը կը խածնէ՝ օղակ մը կազմելով: Աւստրոնեզեան[16] ցեղերու մէջ հաւատք կայ, թէ արարչագործութենէն յառաջ միայն ջուր կար, որուն մէջ վիթխարի օձ մը կը շարժէր:

«Այդ երկրափակ օձի գաղափարին մէջ երկու հայեացքներ կան. մին կապուած է կաթի ծիրին երկնային երեւոյթին. իսկ միւսը հայեացքը կապ ունի ովկիանոսի հետ, որ իր մակընթացութեամբ եւ տեղատուութեամբ՝ կարծել կու տայ, թէ իր մէջ օձ մը կայ՝ որ նոյն իսկ անմիջականօրէն երեւան կու գայ թաթառին մէջ Ասոր դասական մէկ օրինակն է Եդդայի պատմածը Թորի մասին, որ Միդգարդ երկրափակ օձը կարթով մը կ'որսայ. հոս թաթառի ընթերեւոյթն է որ պատկերալից կերպով կը նկարագրուի[17]»:

### գ. Ամպրոպային երեւոյթներ:

8. Մեր ուսումնասիրութիւններն իրենց բնական ընթացքով զմեզ հասցուցին հաւատալիքի մը, որ լայնօրէն շօշափուած է Եզնիկի քով: Վիշապի հաւատալիքն է այդ:

Խնդրին էութիւնն հասկնալու համար՝ Եզնիկի քով երկու վիշապներու զանազանութիւն պէտք ենք ընել: 1. Վիշապն իբրեւ առասպելական հսկայ կենդանի մը, որուն ի՛նչ եւ ո՛րպիսի ըլլալը չէ բնորոշուած: 2. Վիշապն իբրեւ վիթխարի օձ մը: Առաջին տեսակի վիշապը զանազան կերպարանքներ կրնայ առնել, թէեւ մարմնաւոր է (119). այդ վիշապները կալերու մէջ երբեմն ջորւոյ կամ ուղտի կերպարանքով տեսանելի կ'ըլլան. կամ իբրեւ որսորդ ձիու վրայ աշտանակած՝ իրենց որսը կը հետապնդեն: Վիշապը վեր կը բարձրացուի (124—125). Եզնիկի հարեւանցի խօսքէն այնպէս կ'իմացուի, որ այդ վիշապ եզերով վեր կը քաշուի: Երկրորդ տեսակի վիշապներն իրական հսկայ օձեր են կամ ձկներ: Այս երկու վիշապները Եզնիկի մօտ իրարու հետ դրեթէ նոյնացած են, վասն զի առասպելական վիշապը միշտ իբր հսկայ օձ կամ ձուկ ըմբռնուած է եւ իրական օձերու հաւասար համարուած:

Արդ առաջին տեսակի վիշապը պարզապէս դիցաբանական եւ առասպելային գազան մըն է եւ համաշխարհային դիցաբանութեան մէջ շատ անգամ թաթառի անձնաւորութիւնը: Մեր հայ նախահայրերուն երեւցած է ան Վան, Ուրմիա եւ Սեւան լիճերուն մէջ եւ այլուր: Անոր երկնաբերձ հասակը փոթորիկներով պարուրուած եւ առաջնորդուած, ծովափնեայ բնակիչներուն վրայ սաստիկ ազդեցութիւն գործած է: Վասն զի անոնց աչքին՝ ջրեղէն սիւն մը չէ որ մրրկածուփ ալիքներուն վրայ կը շրջի. այլ ծովափնակ ու ծովածին ամեհի վիշապ մը, որ տարրներու պայքարին ամէնէն կարկառուն էակն է: Այդ միջոցին վիշապը կը կռուի թշնամի զօրութիւններու հետ. եւ մարտը միշտ ի՛ր պարտութեամբը կը վերջանայ:

Մի եւ նոյն վիշապին երկրորդ ներկայացուցիչն է ցամաքներու վրայ տեսնուած պտուտահողմի վիշապը. որ բնական է թէ առաւելապէս դաշտերու կը վնասէ, զանոնք աւերելով ու անոնց բովանդակութենէն մաս մը իրեն հետ առնել տանելով:

Ամրոպային աստուածներու հաւատքը շատ զարգացած է արիական ցեղերու քով: Սովորաբար երկու հակառակորդ աստուածութիւններ դէմ դիմաց կ'ելլեն. մին օգտակար անձրեւներու եւ այլն պաշտպանն է, իսկ միւսն աւերիչ փոթորիկներու եւ ջաղբերու ոգին: «Այդ աստուածութիւններու մղած կռիւները թշնամի դեւերու դէմ՝ այլ եւ այլ ձեւերու տակ՝ վեդական եւ երանեան առասպելներու գլխաւոր մէկ մասը կը կազմեն. թէ ի՛նչպէս Ինդրա կը զարնէ ահաւոր օձը, վիշապ Վրտրան, որ ջուրը գողցած ու ժայ-

[13] X, 198:
[14] Զ, 131:
[15] Hoepfner, Der Tierkult, 138:
[16] P. W. Schmidt, Grundlinien, 19:
[17] Ehrenreich, Die allg. Mythologie, 40:

ներու մէջ փակած էր· Ինդրա կը ճեղքէ ժայռը ու ջուրերը վար կը վազցնէ եւ այլն… Այս զրոյցներն անո՛ր համար արիական ցեղերու քով ուժգին շեշտուած են ու անոնց կրօնքը կը բնորոշեն, վասն զի ժողովուրդին իշխող դասակարգը — որոնց ծառայութեան մէջ էին գուսան քուրմերը — ամէնէն աւելի այդ զրոյցները լսել կ'ախորժէր [18]»: Մի եւ նոյն հանգամանքները կրնանք վերագրել նաեւ Հայ դիցաբանութեան:

Արդ նկատենք Եզնիկի նիւթիս հայող տեղիքները:

«Այլ եւ վիշապք, ասեն, եւ նհանգք կերպս ի կերպս լինին· յորոց մին անձնաւոր է եւ միւսն ո՛չ անձնաւոր: — Վիշապն, որ մարմնաւոր է, զիւր կերպարանսն ոչ կարէ փոխել: …Որպէս մարդոյ ոչ է հնար փոխել ի կերպարանս ինչ՝ յոր եւ կամիցի, նոյնպէս եւ ոչ վիշապին (219): Եւ ոչ վիշապք զտոհմականս արդեանց կրեն, եւ ոչ դրաստ դոյ նոցա՝ եթէ զարդիւնս ի կալոց ուրեք կրիցեն, եւ ի զուր է կա՛լ, կա՛լն ասել ումեք ի կալս՝ եւ ո՛չ ա՛ռ, ա՛ռ: Զի վիշապն որ ինքն դրաստ է, այնու զի անասուն եւ անխօսուն է, զխա՞րդ՝ որ ինքն դրաստ է՝ զայլ դրաստ վարիցէ· զի վիշապի այլազգ ինչ բնութիւն չէ՝ եթէ ոչ օձի, այն յայտ իսկ է: Եւ զօձ յաղթանդամ կամ զգազան ինչ ծովածին, կոչեն գիրք վիշապ· որպէս զմարդ յաղթանդամ հսկայ անուանեն, նոյնպէս եւ զօձ ցամաքային անճոռնի, եւ զգազանն ծովական լեռնաձեւ, զկիտացն ասեմ եւ զդելփինաց, վիշապս անուանեն (120): Եւ այլ ինչ ոչ են վիշապք՝ բայց կամ օձք մեծամեծք ցամաքայինք կամ ձկունք անարիք ծովականք» (121):

«Այլ թէ ի կալս ջորիք եւ ուղտք երեւիցին՝ դիւաց կերպարանք են, եւ ոչ վիշապաց· եւ եթէ ի դաշտս երագագանք ձգիցին եւ հեծեալք իբրեւ զմարդիկ զհետ երէոց արշաւիցեն, կեղծիք դիւաց են եւ ոչ ճշմարտութիւն ինչ իրաց: — — — Եւս եթէ բառնայցի ի վեր այնպիսի վիշապն, ոչ եթէ եզամբք ինչ անուանելովք՝ այլ ծածուկ զօրութեամբ իւիք յԱստուծոյ հրամանէ, զի մի չողին մարդոյ կամ անասնոյ մեղանչիցէ» (124—125):

[18] E. Meyer, Geschichte des Altertums, I. Bd., 2. Hälfte, 920:

Եղիշէ [19] մասամբ կ'ամբողջացնէ, մասամբ ալ կը զարգացնէ Եզնիկի հաղորդածները: «Այլ արարած ոչ գոյ որ ի կերպս կերպս փոխիլ կարէ, ոչ վիշապք զոր ասեն, եւ ոչ պայք, բայց հրեշտակք եւ դեւք: — Ապա զխա՞րդ է զի բազումք ասեն, թէ քաջք զպատերազմունս մղեն, եւ զօրս երէոց որսան, եւ զարմտիս ի կալոցն կրեն, եւ զգինիս ի հնձանաց առնուն, եւ վիշապք զտոհմականս անդէոց ծծեն, եւ յոլով մարդիկ տեսեալ են զի վիշապ վերանայր յերկրէ յերկինս: — …Ո՛չ քաջ լեալ է եւ ո՛չ վիշապ (կը պատասխանէ Եղիշէ) … Եւ թէ ուղիղ է զոր ասեն ցորեան եւ գինի առեալ դիւացն, սակայն ոչ ուտեն եւ ոչ ըմպեն եւ ոչ ի տեղւոյն շարժեն զիրսն, այլ երեւոյթս իմն տան: …Եւ ինքեանք դեւք ջորիք եւ էշք երեւին ի կալ՝ կրել ցորեան եւ գինի եւ ա՛րագ արագ վազ առնեն երեւութիւք ի դաշտս իբր թէ որսան»:

Թէ թաթառը կենդանի չար էակ մը կը համարուի՝ միայն հայկական ըմբռնում մը չէ, այլ համաշխարհային: Ժողովուրդին մէջ ո՛չ միայն վիշապ կը համարուի այդ չար էակը, այլ եւ վիշապ բառն ինքնին շատ բարբառներու մէջ թաթառ ըսել է:

Օտար ազգերու հայեացքները գրեթէ նոյն են հայկական հաւատալիքներուն հետ: Հնդիկներու եւ Երանեաններու վրայ խօսք ըրինք արդէն: Յոյն [20] մատենագիրներու քով Κονίσαλος երկու իմաստ ունի· թէ՛ թաթառ եւ թէ՛ վիշապ կը նշանակէ հաւասարապէս եւ իբր փոթորկային աստուածութիւն մը կը ներկայանայ: Մինչեւ հիմայ Յունաստանի [21] մէջ այն հաւատքը կը տիրէ, որ սատանան թաթառի մէջ կը բնակի եւ թաթառի կը կերպարանափոխուի: Գերմաններն [22] ալ փոթորիկը վիշապի կը վերագրեն: Իսկ Բոհեմացիները կարծելով թէ թաթառին մէջն է վիշապը, խունկ կը ծխեն, որ ոգիները փախցնելու զօրութիւնն ունի: Վալախներու

[19] Հարցմունք, էջ 14, 15, 16· տ. Նոր Հայկազեան Բառգիրք «Վիշապ»:

[20] L. Radermacher, Beiträge zur Volkskunde aus dem Gebiet der Antike (Kais. Akad. d. Wiss. in Wien, Phil.-hist. Klasse, Sitzungsber., 187. Bd., 3), 1918, 56:

[21] L. Radermacher, Griechische Quellen zur Faustsage (նմանապէս նոյն կաճառի Sitzungsber. 206, 4), 1927, 46:

[22] Dr. F. L. W. Schwarz, Wolken und Wind, Blitz und Donner, Berlin 1879, 165—166: Եգիպտական վիշապի մասին, Orelli, I, 151:

համաձայն օձ մըն է այդ՝ փոքրիկ թեւերով եւ հսկայ պոչով, որոնք անոր շարժիլը հնարաւոր կ'ընեն. օդերու անսահման տարածութեան մէջ այդ օձը երբեմն հսկայական արագութեամբ կ'ընթանայ, երբեմն ալ՝ հանդարտ ու հանդիսական շարժումներով: Օդը լեցուն է այսպիսի վիշապներով, որոնք շատ անգամ իրարու հետ կը կռուին. կը հաւաքեն իրենց ամպային բանակները եւ ուժգնութեամբ իրարու կը բախին՝ մինչեւ որ մէկ կողմը տեղի տայ: Այս կռիւներու հետեւանքով է, որ լաւ կամ գէշ անձրեւներ կու գան:

Հայ ժողովրդական հաւատքի աւանդները շատ առատ են այս մասին: «Փոքրիկ թաթառները, կը պատմէ Ե. Լալայեան[23], որ երբեմն գոյանում են Ախալքալաքի լճերի վրայ, կոչւում են ուշապ: Ժողովուրդի կարծիքով ուշապը մի սարսափելի վիշապ է, որ շղթաներով կապուած է երկնքից, գլուխը վեր, պոչը վայր: Սա գոյանում է եղնիկից: Երբ եղնիկը ծնում է, մայրը թողնում մի ժամուայ ճանապարհ փախչում է. ուշապները իջնում, սրան երկինք են քաշում, ուր մեծանալով նա էլ է դառնում ուշապ. կանգնում, այս ժամանակ մայրը տեսնում, դալիս պահում է: Եթէ վիշապին շղթաները արձակուին, սա կը կործանէ աշխարհը, իսկ եթէ գլուխը վայր կախուի կը կործանուի աշխարհը»: Բուլանըխի[24] մէջ ցամաքային փոթորիկը «սատանի քամի» կ'ըսուի: Իսկ ծովային փոթորիկը «թաթառ կամ յուշապ» անունը կը կրէ, որ ծով կ'իջնայ ջուր խմելու համար: Գանձակցիներու[25] «ուշէփ»ը եօթնգլխեան հրէշ մըն է: Իւրաքանչիւր գլխու վրայ 40 բերան ունի եւ մէն մի բերնի մէջ 40 ակռայ կայ: Շիրակացիները[26] կը հաւատացնեն, որ վիշապներն առաջ երկրաբնակ էին եւ մարդկան վնասներ կը հասցնէին ու գիւղերը կը փճացնէին: Ասոր վրայ Աստուած զանոնք այրի մը մէջ բանտարկեց: Բայց անոնք կործանեցին այդ սարը եւ մէջէն փախան: Հրեշտակները շղթայի զարկին վիշապները եւ երկինք քաշեցին: Ամպի գոռումն անոնց ձայնն է, վասն զի ազատիլ եւ աշխարհիս վերջ տալ կ'ուզեն. բայց Աստուած կրակէ գաւազանով (կայծակ) միշտ կը սպառնայ անոնց: Նոր Նախիջեւանի մէջ[27] «սատանի հարսնիք» կը կոչեն պտուտահողմը եւ կը ջանան յորձանքին մէջ գմելին մը նետել, որ զայն բարձրացնող սատանային մատը կտրուի եւ թաթառն հանդչի: Վարանդայի[28] տեսադծին համաձայն կայծակը հրեշտակներու գաւազանն է, որով սատանային կը զարնեն: Տեղական տարբերակի մը համեմատ՝ երկու հրէշներ կը կռուին իրարու հետ սրերով, որոնց ցոլքը՝ փայլակն է, իսկ ընդհարումէն կայծակ ու որոտում յառաջ կու գայ: Եւ կամ. երկու վիթխարի զազաններ իրարու հետ եղջիւր կը զարնեն, որուն ընդհարումէն կայծակ կը գոյանայ: Նոր Բայազէտցիները[29] կը հաւատան, որ փոթորկի ժամանակ Քրիստոս կայծակնահար կ'ուզէ ընել սատանաները, որոնք մարդկան քով կը սղոսկին, կարծելով՝ թէ Քրիստոս մարդիկներուն խնայելով՝ կայծակ չ'արձակեր: Բայց Քրիստոս միշտ չի խնայեր: Անոր համար մարդիկ շարունակ կը խաչակնքուին, որ սատանաները փախչին: Անոնք քարերու տակ կ'ապաստանին կամ Սեւանայ լիճը կը փախչին, ենթադրելով, որ հոն ապահով կ'ըլլան: Սակայն Քրիստոս քանի մը հրեշտակ կը ղրկէ, որոնք սատանաները կը շղթայեն եւ աղմուկով վեր կը քաշեն: Շատերը տեսած են սատանային շղթայակապ քաշուիլը եւ աղմուկները լսած. Սատանան վիշապի նման էր, երկար պոչով, որ դպած տեղը փշուր փշուր կ'ընէր: Վասպուրականցիները[30] կը կարծեն, որ Վան լճի մէջ սարսափելի մեծութեամբ վիշապներ կան: Երբ անոնցմէ մին 1000 տարեկան ըլլայ, հրեշտակները զայն վեր կը քաշեն, արեւուն կրակով կ'այրեն եւ մոխիր կը դարձնեն զայն: Մոխերը երկիր կը թափուի: Ասոր հետեւանքով այնպիսի թանձր մառախուղ կը տիրէ, որ քանի մը քայլի վրայ մարդիկ զիրար չեն տեսներ: Նոյն լճին նաւաստիները «սեղանայս» անունով չար ոգի մը կ'ընդունին, որ թաթառի հաւասար կը համարուի: Փոթորկի ժամանակ սեղանայս նաւերը խորտակելու կու գայ. ուստի եւ նաւաստիներն անմիջապէս առագաստները կ'իջեցնեն եւ սուրբերն օգնութեան կը կանչեն: Իսկ երբ որ ցամաքի վրայ թաթառներ տեսնուին, վա-

23 Ազգ. Հանդ., Ա, 351:
24 Զ, 35:
25 Զ, 352:
26 Էմին. ազգ. ժող., Ա, 199:

27 IX, 46:
28 Բ, 220:
29 XVII, 107:
30 XXV, 58—59:

*նեցիք «սատանի խարսնիս» կ'անուանեն զայն եւ կը համարին՝ թէ սատանաները խումբ մը վիշապներ կը քաշեն վեր, որպէս զի բարձրութենէ վար ձգեն եւ սպաննեն*[31]*:*

*Արդ՝ այս ամէնն ուշադրութեան առարկայ դարձնելէ յետոյ՝ դիւրաւ կրնայ հասկցուիլ՝ թէ ի՛նչ ըսել կ'ուզէ Եզնիկ գրելով. «Եւս եթէ բառնայցի ի վեր այնպիսի վիշապն, ոչ եթէ եզամբք ինչ անուանելով՝ այլ ծածուկ զօրութեամբ իւիք յԱստուծոյ հրամանէ, զի մի չոգին մարդոյ կամ անասնոյ մեղանչիցէ»* (124—125)*: Հոս յիշուած եզերը բացատրութեան կը կարօտին: Արդէն չեշտեցինք, որ վիշապին դէմ կռուող եւ յաղթութիւնը տանող բարի ոգի մը կը մտածուի միշտ: Արդ յառաջբերութեանս մէջ եզն է ամպրոպի այդ բարի ոգին, որուն տակ ծածկուած է բուն աստուածութիւնը: Եզը մէկ կերպարանափոխութիւնն է ամպրոպի բարի աստուածին, որ վիշապին հետ կռուելու ժամանակ՝ ամպեր, բեղմնաւորութիւն եւ ոյժ խորհրդանշող այդ կենդանւոյն տակ ծածկուած է: Արիական դիցաբանութեան ընտել մէկ ըմբռնումն է այս, որուն իբր յայտնի օրինակ՝ պարսկական Վերեթրագնան կրնանք յառաջ բերել: Վերեթրագնա = Վահագն անունն արդէն կը բովանդակէ դիցաբանական հսկայ հաւատալիք մը. ամպրոպային մարտի հաւատալիքը: Այդ անունը օձ կամ վիշապ սպաննող կը նշանակէ, այսինքն «վիշապաքաղ», բառ մը, որ Վերեթրագնա = Վահագնի հարազատ թարգմանութիւնն է: Արդ Վերեթրագնա*[32] *շատ անգամ եզի կերպարանք կ'առնէ, որ դեղին ականջներ եւ ոսկեղէն եղջիւրներ ունի: Իրեն հետ սերտօրէն կապուած է ամպրոպային ուրիշ բարի աստուածութիւն մը, Տիշտրիա, որ արգասաբեր անձրեւներու վրայ կը հսկէ: Իրեն թշնամիներն են դեւերն* (deva) *ու պայրիկաները (պարիկ), որոնք կը ջանան երաշտ բերել: Այդ թշնամի դեւերուն պարագլուխն է Ապաոշա, որովհետեւ Տիշտրիայի դէմ կը կռուի եւ թոյլ չի տար որ անձրեւները վար երկիր իջնան: Ամէն տասն օր մէկ մը Տիշտրիա նոր կերպարանք*[33] *մը կ'առնէ — ցուլի, ձիու եւ այլն — եւ այդպէս կը կռուի վիշապին հետ: Արդ մեր հեղինակին ակնարկած եզերն ալ Վերեթրագնայի եւ Տիշտրիայի նման եզի փոխուած աստուածութիւններու հետ կապ ունին, որոնք վիշապին դէմ կ'ոգորին: Ուստի՝ ինչպէս որ արդի հայ ժողովրդական հաւատքին մէջ հրեշտակները երկինք կը քաշեն վիշապն, այդպէս նաեւ ամպրոպային եզ-աստուած մը կը բարձրացնէ ու կը սպաննէ զայն՝ Եզնիկի օրով:*

*Նոյնպէս լուսաբանութեան կարօտ է Եզնիկի հետեւեալ հատուածը. «Եւ ո՛չ վիշապք զտոհմականս արդեանց կրեն, եւ ոչ գրաստ դոյ նոցա՝ եթէ զարդիւնս ի կալոց ուրեք կրիցեն; եւ ի զուր է «կա՛լ կա՛լ»ն ասել ումեք ի կալս՝ եւ ո՛չ «ա՛ռ ա՛ռ». զի վիշապն որ ինքն գրաստ է, այնու զի անասուն եւ անխօսուն է, զիա՞րդ ... զայլ գրաստ վարիցէ»* (120)*: Արդէն ակնարկեցինք որ թէ՛ ծովու եւ թէ՛ ցամաքի պտուտահողմը վիշապ կը նկատուի: «Փոշւոյ թաթառը, որ հովէ պարուրուած՝ ասդին անդին կը շրջի եւ յանկարծ կը փոշիանայ կ'անցնի, գիտուն մարդուն եւ ո՛չ ուշադրութիւնը կը գրաւէ. բայց ժողովրդեան երեւակայութիւնն այդ գորշ կուտակութեան մէջ կենդանի բան մը, դիւային ցնորքի մը մարմնացումը կը տեսնէ*[34]*»: Արդ, մինչ փոթորկի ժամուն թաթառը խորհրդաւոր շարժումներով արտերու մէջ կը յածի, սարսափահար գիւղացին չար ոգի մը կը տեսնէ անոր մէջ, որ իր կալերուն վնասելու եկած է: Սուրացող գորշ սիւնին գալարումներուն մէջ՝ գրաստներու երեւոյթը կը տեսնէ ան, որոնք վիշապին հետ եկած են կալերուն բերքերը գողնալու: Եւ երբ կալերէն փոթորիկն անցնի երթայ վիշապին հետ, խեղճ գիւղացին կը տեսնէ որ կալէն իրապէս յարդ, ցորեն եւ այլն պակսած է, վասն զի վիշապը զանոնք իր յորձանքներուն մէջ առած տարած կ'ըլլայ: Գեղջուկը երբ վիշապի գալը կը տեսնէր՝ զայն վախցնելու եւ կալերէն վռնտելու համար կը պոռար. «Կա՛լ, կա՛լ. բռնէ բռնէ»: Այս խօսքով կը դիմէր վիշապն հալածող բարի ոգւոյն, որ վիշապը բռնէ հեռացնէ կալերէն: Կամ, եթէ տեսնէր, որ բարի ոգին շատ օգնելու միտք չունի, վիշապին կը դիմէր եւ իբր թէ յօժարութեամբ անոր տրամադրութեան տակ կը ձգէր կալին բերքերն՝ ըսելով. «Ա՛ռ, ա՛ռ, ուզածդ տար»: Ասով կը յուսար թէ վիշապը թշնամի չէր նկատեր*

---

[31] *Հմմտ.* Հանդ. Ամս., 1929, 638—642:

[32] Orelli, II, 159:

[33] Spiegel, II, 71:

[34] Radermacher, Beiträge, 56:

զէնքն ու իր կալին կը խնայէր: Նա մանաւանդ, կալին տէրը գիտէր, որ եթէ այսօր վիշապն իր յարդը, ցորենը եւ այլն գողնայ, վաղը կրնայ անոր փոխարինում ընել, վասն զի օտար կալերէ կը բերէ կը դիզէ իր կալին մէջ: Այս հաւատքն ալ անկից յառաջ կու գայ, որ պտուտահողմն իրեն հետ տարած իրերն ուրիշ արտի մը մէջ կը տանի կը թափէ եւ գիւղացւոյն կարծել կու տայ, որ ինքը հոն բերած է զանոնք: — Ամէն պարագայի մէջ ռամիկը կալին մէջ «կա՛լ, կա՛լ» եւ «ա՛ռ, ա՛ռ» խօսքերը ոգիներուն է որ կ'ուղղէր եւ ո՛չ երբեք ուրիշ մէկու մը:

Վիշապի յորձանքներուն եւ գալարումներուն մէջ ո՛չ միայն ջորիներ, ուղտեր եւ այլն տեսանելի կ'ըլլան գեղջուկին, այլ եւ ձիաւորներ կը տեսնուին, որոնք իրենց որսը կը հետապնդեն: Վասն զի պտուտահողմի առջեւէն հանդիպած կենդանիներն ու երէները սարսափահար կը փախչին:

Վիշապն այսչափով չի գոհանար սակայն: Իբրեւ չար ոգի՝ նոյն իսկ մառաններու եւ ախոռներու մէջ կը ջանայ յառաջ տանիլ իր հետապնդումները, կալերէն ու այգիներէն փոխադրուած բերքերու վնասել ուզելով. գինի կը գողնայ, ախոռներու եւ անդերու արջառին կաթը կը ծծէ:

Քանի մը զուգակշիռներով՝ կ'ուզենք խնդիրն աւելի պայծառացնել եւ մեր տուած մեկնութիւնն հիմնաւորել: Վարանդացիները[35] երբ երկնքի վրայ սպիտակ ամպ տեսնեն, որ բոլորովին առանձին կեցած է, «դարմանգող»՝ այսինքն խոտ, յարդ, գողցող (յարդգող) կը կոչեն զայն. վասն զի անոր երեւումը նշան է, որ փոթորիկ պիտի ելլէ եւ «կալերէն դարման (յարդ) պիտի գողնայ»: Նախահայաստանի Ուրարտացիներն[36] աստուածութիւն մ'ունէին, որ դաշտերէն արմտիք կը գողնար: Եստլանդցիներու[37] pick անունով ոգին ալ մեր վիշապին շատ տեսագծերուն մասնակից է: Միայն թէ իբր պտուտահողմի ոգի չ'երեւար ան, այլ իբր տան ոգի մը՝ կ'երթայ ունեցողներու քովէն յարդ, խոտ եւն կը գողնայ եւ իր սիրած տան կենդանիներուն կը տանի: Նոյնը կ'ընէ օտար կովերու կաթին: Նմանապէս գերմաններու քով ցորեն, խոտ, խար եւ այլն բերող ոգիներ կան: Երբ այսպիսի ոգի մը այլեւս հեռանալ ուզէ այն տնէն, ուր կը կենար, կը սկսի վնասներ հասցնել. խոտի տեղ՝ յարդ կը բերէ, փոխանակ յարդի՝ մացառներ, ցորենի փոխարէն՝ աւազ. եւ հեռանալէն յառաջ նոյն իսկ կրակ կու տայ տան[38]:

*

---

[35] Ազգ. Հանդ., Բ, 220:

[36] J. Sandalgian, Histoire documentaire de l'Arménie des âges du paganisme. Rome 1917, tome II, էջ 634:

[37] v. Schroeder, Germanische Elben und Götter beim Estenvolke (Kais. Ak. d. Wiss. in Wien, Phil.-hist. Klasse, Sitzungsber., 153, 1), 1906, 15—16:

[38] Եզնիկի յիշուած խնդրական հատուածը Հ. Ն. Փէչիկեան հետեւեալ կերպով կը փորձէ լուսաբանել, Բազմավէպ, 1929, 67—68 էջերուն մէջ.

«Եզնիկ նախ (էջ 98) կ'ապացուցանէ թէ հրեշտակ եւ դեւ անմարմին ըլլալով՝ անծնունդ են. հետեւաբար համբարու, պայ, յուշկապարիկ, իշացուլ կամ ծովացուլ անունները չեն կրնար դեւերէն յառաջ եկած բան մ'ըլլալ. անոնք ա ն ձ չեն, այլ պարզապէս բաջաղանք եւ մոլորելոց մտաց (97—98). այս կարգի առասպելներէն է նաեւ յարալէզը: Յետոյ դից եւ դիւցազանց վրայ կը խօսի ցուցնելով վերջապէս թէ հրեշտակներէն ու դեւերէն զատ ուրիշ արարած չկայ»:

Այս եւ յաջորդ անօսր զրչութիւնը մեզմէ է եւ ուշադրութիւն կը հրաւիրենք անոր մասին: Նախ ակնարկուած անձ բառը չէ հասկցած Հ. Փէչիկեան. վասն զի այդ բառով Եզնիկ «մարմնաւոր (արարած)» ըսել կ'ուզէ, հակադրութեամբ անմարմնի եւ ո՛չ «անձ» ինչպէս կ'իմանայ Մեծ. Հայրը: Ինչպէս հոս, նաեւ այլուր այս իմաստով կը գործածէ Եզնիկ բառս: Օրինակ. «... վիշապք, ասեն, եւ նհանգք կեղծս ի կեղծս լինին. յորոց մին (իմա՝ վիշապն) անձնաւոր է եւ միւսն (իմա՝ նհանգն) ոչ անձնաւոր: Վիշապն, որ մարմնաւոր է, զիւր կերպարանսն ոչ կարէ փոխել: — Նա եւ ոչ նհանգ ինչ անձնաւոր գոյ (119): Զի եթէ էր ինչ նհանգն անձնաւոր, ո՛չ երբեմն ի կնոջ կերպարանս երեւէր եւ երբեմն փոկ լինէր» (123): Ինչ որ հոս «անձնաւոր» եւ «ոչ անձնաւոր» բառերով կը բացատրէ Եզնիկ, ուրիշ տեղ (նոյն նիւթին շուրջ) «մարմնաւոր» ու «անմարմին» բառերով կը հասկնայ: Քիչ վարն ալ խօսքը ո՛չ թէ հրեշտակներէ եւ դեւերէ զատ արարածներու չգոյութեան վրայ է, այլ Եզնիկ յայտնի կերպով կ'ըսէ, որ հրեշտակներէ եւ դեւերէ զատ կերպարանափոխուող արարած չկայ, եւ ոչ թէ առ հասարակ ուրիշ արարած գոյութիւն չունի: Հ. Փէչիկեան կը դրէ դարձեալ.

«Այս ճշմարտութեան հետեւանք, կ'ըսէ, հրեշտակ եւ դեւ են որ «կարող են զօդս գնդել եւ պարզել» որպէս զի կարենան ըստ այնմ «ազգի ազգի կերպարանս ց ո ւ ց ա ն ե լ» [այսինքն ըստ բնագրին «երեւեցուցանել»]: Ասոր հակառակ ժողովրդական առարկութիւնը մէջ կը բերէ թէ վիշապներն ու նհանգները զանազան կերպարանք կ'առնեն. բայց իսկոյն զայն կը ջրէ՝ փաստելով թէ մարմնաւոր էակն իր կերպարանքը չի կրնար փոփոխել ինչպէս յայտնի է մարդէն. եւս առաւել վիշապ (օձը): Հոս է ուրեմն որ կը ջրէ հայ ժողովրդական հին սնապաշտութիւնը թէ «Եւ ոչ վիշապք զտոհմականս արդեանց կրեն» եւն: Նոյն նիւթին շուրջ դեռ ուրիշ առասպել առարկութիւններ մէջ բերելով (106—107) իբր թէ «ի կալս ջորիք եւ ուղտք երեւիցին՝ դիւաց կերպարանք են այն եւ ո՛չ վիշապաց... կեղծիք դիւաց եւ ո՛չ ճշմարտութիւնք իրաց»: Արդ նախորդ ըսուածներէն եւ վերջին երկու տեղերէն կ'իմացուի, որ աշնան կալերու շրջանին առասպելներու շուրջ է խօսքը: Ծ ա ր պ ի կ, գ ո ղ գ ե ղ ջ ո ւ կ ն ե ր կ ա լ ե ր ո ւ ժ ա մ ա ն ա կ, մ ո ւ թ ի ն, ա ն պ ա հ ա պ ա ն դ է զ ե ր ը կ'ա ւ ա ր ե ն ե ւ մ է ջ տ ե ղ

*Այս երկրորդ հատուածին մէջ Եզնիկ տեղեկացուց, թէ․*

1․ Երկիրը *ոչնչի վրայ կամ ջուրի մէջ կը կենայ։*

2․ *Երկիրը տափարակ է․ երկինքն իբր անշարժ մարմին կը ծածկէ զայն։*

Վիշապն (*իբրեւ երկրի եւ ծովու վրայ երեւցող ըներեւոյթ*) *երկու տեսակ է․* ա․ *Վիշապն իբրեւ առասպելական հսկայ գազան մը, որուն էութիւնը չէ որոշուած։* բ․ *Վիշապն իբրեւ իրական կենդանի, հաւասար համարուած մեծ օձերու եւ ձուկերու։ Առասպելական վիշապը մարմնաւոր է․ բայց կրնայ ջորւոյ կամ ուղտի կերպարանք առնել, կալերէն գողութիւն ընել, իբր ձիաւոր՝ երեներու եռեւէն իյնալ։ Եզները վեր կը քաշեն այդ վիշապը, որ իր հրեղէն շնչով չվնասէ մարդկան եւ անասուններու։ (Առաջին տեսակ վիշապն է ամպրոպային չար աստուածութեան ներկայացուցիչը։)*

*(Շարունակելի։)* *Հ. Ա. ԳԱՐԱՄԱՆԼԵԱՆ*



---

*ձայն կը հանեն թէ՝* վիշապները կրեր տարեր են․ *եւ միամիտներ ալ կը հաւատան»։*

*«Եզնիկ իր դրած հիմերուն եւ ապացոյցներուն համեմատ կ'ուզէ ցուցնել թէ կերպարանափոխ վիշապ գոյութիւն չունի․ զուր առասպել է՝ թէ ան կու գայ մեր կալերէն տոհմականներ կրելու․* հետեւաբար, *կ'ըսէ,* ի զուր է այդ երեկոները մէկը միւսին ազաղակել *«վիշա'պը բռնէ, վիշա'պը բռնէ»* եւ չըսել *«ձեռքէն ա'ռ ձեռքէն ա'ռ»։ Հ․ Փէչիկեանի այս մեկնութիւնը գիտականէ աւելի բանաստեղծական է։ Կերպով մը ըմբռնելի դարձնելու համար այս մեկնութիւնը, իրիկուան մութն ալ օգնութեան կանչել հարկ համարուած է, թէեւ Եզնիկ իրիկուան մասին ո եւ է ակնարկութիւն չունի։*

*Հ․ Փէչիկեան իր մեկնութիւնը տալէն յառաջ՝ եթէ ժողովրդական հաւատքի նուիրուած լաւ գրութեան մը խորհուրդ հարցնէր, թերեւս գոհացուցիչ դառնար իր տալիք մեկնութիւնը։ Մ․ Աբեղեան՝ մեր տուած մեկնութեամբ անցողակի լուսաբանած է արդէն Եզնիկի խնդրական տեղիքը․* Der arm. Volksgl., 79—80: *Նոյն հատուածով զբաղած է նաեւ Սանտալճեան եւ ուրիշներ․ անոր համար՝ Հ․ Փէչիկեանի խօսքն անտեղի է, թէ․ «Զեմ գիտեր ի'նչպէս քննութեան եւ մեկնութեան չէ արժանացած [Եզնիկի այդ կտորը] բանասէրներէն»,* Բազմավէպ, *անդ,* 67—68: *Սանտալճեանի մեկնութիւնը բոլորովին վրիպած պէտք ենք նկատել, որ Եզնիկը հետեւեալ ձեւով կը հասկնայ․* «Ni même les dragons n'emportent les produits de la terre; ils n'ont point des bêtes de somme pour qu'ils soient à même d'emporter les produits qui se trouvent étalés sur l'aire de n'importe qui [*«ուրեք»ը՝ «ուրուք» է հասկցած*]; il est inutile de prononcer à leur adresse les mots: ,l'aire! l'aire!' [*«կալ, կալ» = արտ իմաստով առած է, եւ ո'չ թէ «բռնէ', ա'ռ»*] ou bien ,prends! prends!'», J. Sandalgian, Histoire, tome II, *էջ* 759:

# ՀՆՉԱԲԱՆԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

## Ց — y, Ւ — w:

*(Շարունակութիւն․)*

*Ահաւասիկ մի շարք օրինակներ, որ կասկած չեն թողնում այն մասին, թէ տարբեր լեզուական միջավայրերի մէջ* միեւնոյն *յօրանջքը գոցուած է* տարբեր *խցաններով, որ են* յ *կամ* ւ:

1․ ժօռատ *նշանակում է․ «ատամները թափած»։ Այս բառը գրում եմ դասական կարգով եւ տրոհում եմ իբր* ժաւռ–ատ: *Նայելով բառի իմաստին* ժաւռ *պէտք է որ նշանակէր «ատամ»։ Եւ իրօք, մենք ունինք նոյն բառը* ժայռ *ձեւով, որ նշանակում է «ատամ»։ Ուրեմն* ժաւռ–ատ *նոյն է թէ՝* *ժայռ–ատ: *Առաջին ձեւն աւանդուած է, իսկ երկրորդը՝ ոչ։ Բայց այս չաւանդուած ձեւի բունը —* ժայռ, *որ աւանդուած է իբր զատ բառ, մեզ մեկնում է երկրորդ բառի բունը* ժաւռ, *որ իբր զատ բառ չի աւանդուած։ Պարզ է, որ* յ *եւ* ւ *ձայներն այս բառերի մէջ փոխարինում են իրար այնպէս, ինչպէս նոյն ձայները* հայր *եւ* հաւր *բառերի մէջ։ Անշուշտ* ժաւռ *եւ* ժայռ *բառերի* յ–*ն եւ* ւ–*ը միեւնոյն բաղաձայնն են փոխարինում, որի երանգը որոնելը մեզ հեռու կը տանէր։ Բայց ինչպէս* հաւր *եւ* հայր *ձեւերի* յ–*ն ու* ւ–*ը փոխարինում են մի վաղեմի* տ *(հմմ․* հատար > *հայր* || *հաւր), այնպէս եւ* ժաւռ *եւ* ժայռ *բառերի խցաններն են* յ–*ն ու* ւ–*ը, որ գոցում են* միեւնոյն *յօրանջքը։*

2․ *Ժողովուրդն ասում է․ «սօթ տալ», որ նշանակում է «սայթաքել»։ Գրում եմ այդ բառը դասական կարգով․* սաւթ: *Իր զուգահեռ կազմութիւնը պէտք է մեզ տար* սայթ, *որ* սայթաքել *բայի արմատն է։ Կարծում եմ այս բայի մէջ* աք *ածանցը բաղադրուած է* ոտք *նշանակութեամբ։ Ինչպէս նոյն բառից ունինք․* աք–աց–ել, *ունինք նաեւ* սայթ–աք–ել: *Մենք տեսնում ենք, որ այստեղ եւս* միեւնոյն *յօրանջքը գոցուած է տարբեր խցաններով, որ են* յ *եւ* ւ: *Պէտք չէ մոռնալ որ* ւթ *եւ* յթ *խմբերի մէջ չքացած են վաղեմի ձայնաւորներ, որոնք եւ ստեղծած են յօրանջք մեզ հասած ձայնաւորների հետ միասին։*

3․ Ցօտնգ․ *սա մի գործիք է, որով գարնանը կտրում են որթատունկի մատները։*

# ՀՐԵՇՏԱԿՆԵՐՆ ՈՒ ՍԱՏԱՆԱՆԵՐԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԻՆ ՄԷՋ

Հրեշտակներուն եւ սատանաներուն մեծ դերեր կու տայ սին հաւատքը: Անոնք երկու հակամարտ աշխարհներու ներկայացուցիչներն են, որոնք վճռականապէս կ'ուզեն մարդ արարածն իրենց կողմը շահիլ[1]:

Եզնիկի քով՝ բաւական տեղեկութիւն կը գտնենք այս մասին իրեն ժամանակակից սին հաւատքի մէջէն: Ուստի կ'ուզենք աւելի մօտէն ուսումնասիրել այս նիւթը. եւ դիւրութեան համար՝ հրեշտակներու եւ դեւերու մասին հաղորդուածները երեք գլխաւոր տեսակէտներով կ'ուզենք նկատել. 1. Հրեշտակներն ու սատանաներն ընդհանրապէս. 2. Հրեշտակները. 3. Սատանաները:

1. Հրեշտակներն ու սատանաներն ընդհանրապէս: Այս ոգիներու հոգեկան գոյութեան մասին յետոյ մանրամասնաբար պիտի խօսինք. առ այժմ այսքանն ըսենք, որ ժողովուրդը գտնոնք թէ՛ նիւթական եւ թէ՛ աննիւթական կ'երեւակայէ:

Հրեշտակներն ու դեւերը կ'իշխեն մթնոլորտային երեւոյթներու վրայ. «...հրեշտակք եւ դեւք... կարող են զօդս գնդել եւ պարզել» (119):

Երկու տեսակ ոգիներն ալ հոգէառի պաշտօն կը կատարեն: Կողբացին ցոյց տալ կ'ուզէ ռամկին, որ սատանան հոգէառ չէ՝ իրենց կարծիքին համաձայն. անոր համար կ'ըսէ. «Բայց ընդէ՞ր ոչ նա (դեւ), այլ հրեշտակ Աստուծոյ եհար զանդրանիկսն եգիպտացւոց, եւ բազում անգամ զՀրեայսն յանապատի անդ: Զի եթէ նա յայն եղեալ էր, ընդէ՞ր ոչ նայն հարկանէր՝ այլ հրեշտակ» (174—175):

Ժողովուրդին խոր համոզումն է, որ այդ ոգիները սեռային յարաբերութիւններ կրնան ունենալ եւ կ'ունենան. «Այլ հրեշտակք եւ դեւք ո՛չ յաւելուած ծննդեամբ առնուն, եւ ո՛չ պակասութիւն մահուամբ. այլ որպէս հաստատեցանն՝ նոյնպէս եւ նովին թուով կան, առանց յաւելուածոյ եւ նուազութեան (118): Եթէ անմարմինք էին (սատուածներն ու ոգիները), չէր մարթ անմարմնոցն ընդ կանայս մարմնաւորս ամուսնանալ: ...Եւ որպէս ոչ զոն ծնունդք դիւաց, նոյնպէս եւ ոչ մահ (117—118): Եւ արդ ո՞ւր իշխիցեն չշնջել, որ ասեն՝ թէ հրեշտակք ընդ կանայս ամուսնացան, զի նոքա հրեղէնք կոչին եւ մարդիկ խառեղէն» (106):

Բարի եւ չար ոգիներու մասին ժողովրդական այս երեք հայեացքները յաջորդաբար պիտի ուսումնասիրենք:

2. Հրեշտակները: Հին եկեղեցւոյ մէջ շատ տարածուած ռամիկ հայեացքի մը հետ կապ ունի՝ ինչ որ Եզնիկ հրեշտակներու ամուսնութեան մասին կ'ըսէ ժողովրդեան կողմէն:

Այս ըմբռնումը հրէական աղբիւրէ բխած է եւ յատկապէս Ծննդոցի (Զ. 2—5) հետեւեալ տեղիքին հետ սերտ աղերս ունի. «Տեսեալ որդւոցն Աստուծոյ զդստերս մարդկան զի գեղեցիկ էին, առին իւրեանց կանայս յամենեցունց զոր ընտրեցին... Եւ յետ այնորիկ իբրեւ մտանէին որդիքն Աստուծոյ առ դստերսն մարդկան, եւ ծնան իւրեանց որդիս. նոքա էին սկայքն, որ յաւիտենից ա՛րք անուանիք»: Յառաջբերութեանս «որդիք Աստուծոյ» բացատրութիւնը հասկնալու կերպէն կախուած է հայեացքի եղանակաւորումը: Եօթանասնից մէկ հին ընթերցուածն[2] ունէր. «Աստուծոյ հրեշտակները տեսան, որ գեղեցիկ են...». այս ընթերցուածին վրայ յեցած՝ Փիլոն, Յովսէպոս, Յուստինոս, Տերտուղիանոս եւ ուրիշներ կը համարէին թէ հրեշտակներու կը հայի խօսքը: Իսկ անոնց կ'ընդդիմանային ուրիշ եկեղեցական հեղինակներ. թէեւ խնդրական տեղիքը դժուարաւ թէ ուրիշ կերպով մեկնուէր՝ լեզուական տեսակէտով: Այս վերջինները, որոնց մեկնութիւնը վերջնական յաղթանակը տարաւ, «որդիք Աստուծոյ» ըսելով՝ Սեթի բարեպաշտ որդիները կը հասկնային, իսկ «որդիք մարդկան» անունին ներքեւ՝ Կայենի ամբարիշտ սերունդը կը տեսնէին:

Փիլոն[3] յետադայ կերպով կը խորհրդածէ հատուածին վրայ. «Ընդէ՞ր ի հրեշտակաց եւ ի կանանց հսկայքն: — Քերթողք

[1] Բնական է՝ արդէն կարելի է ենթադրել, որ հրեշտակներն ու սատանաները նախաքրիստոնէական ոգիներու դերն ստանձնած են: Այս խօսքը մանաւանդ կ'արժէ սատանային համար, որ չի կրնար հեթանոսական շրջանին վերաբերած ըլլալ: Իսկ «հրեշտակ» բառը նախաքրիստոնէական է եւ պահլաւերէնէ փոխառութիւն:

[2] Reischl, Die heiligen Schriften, I. Bd., Regensburg 1867, 9:

[3] Փիլոնի այնոցիկ որ ի լինելութեան խնդրոց եւ լուծմանց, Վենետիկ 1826, 66:

զհսկայն երկրածինս պատմեն երկրի մանկունս: Իսկ սա պիտակարար եւ յաճախ անուամբք, կամեցեալ ցուցանել զառաւելութիւն մեծութեան մարմնոց, եւ հայկաչափ․ եւ խառնակ յերկուց պատմէ զոցա լինելութիւն, ի հրեշտակաց եւ ի մահկանացու կանանց... Բազում անգամ... նմանին մարդկան, որպէս յաղագս առ կանայս գիտանալոյ ի հայկից ծնունդ»:

Ս․ Օգոստինոս[4] Եօթանասնից յիշուած ընթերցուածին համաձայն յառաջ կը բերէ խնդրական տեղիքը (զոր սակայն երկրորդ կարգի մեկնիչներուն համեմատ կ'ըմբռնէ)․ «Videntes autem Angeli Dei filias hominum, quia bonae sunt, sumpserunt sibi uxores»: Մինչ Vulgata ունի․ «Videntes filii Dei filias hominum...»:

Սակայն կայ նաեւ ուրիշ ազդակ մը, որ հայեացքիս զարգացման եւ լայնածաւալ տարածման մեծապէս նպաստած է: «Ենովքի Գրքին»[5] մէջ պատմուած հետեւեալ կտորն է․ «Եւ պատահեցաւ որ՝ երբ այն օրերուն մարդկան որդիները բազմացան, անոնց գեղեցիկ եւ ազնիւ դուստրներ ծնան: Եւ հրեշտակները, երկնքի որդիները, զանոնք տեսան եւ անոնց ցանկացին եւ իրարու ըսին․ «Ո՜ն, մեզի կիներ ընտրենք մարդկան որդիներու մէջէն եւ զաւակ ծնանինք»: ...Ասոր վրայ երդուընցան (որ բաժնին պիտի ընեն): Եւ իջան Արդիսի վրայ, որ Հերմոն լերան գագաթն է... Եւ կիներ առին, եւ իւրաքանչիւր մէկն իրեն համար կին մ'ընտրեց, եւ անոնց հետ սկսան երթալ, եւ անոնց հետ խառնուեցան... Իսկ անոնք յղացան եւ մեծ հսկաներ ծնան, որոնց բարձրութիւնը 3000 կանգուն էր»:

Ենովքի կոչուած այս անկանոնական գրութիւնն է, որ առաւելապէս նպաստած է հրեշտակներու մասին կազմուած այս գաղափարին եւ անոր ժողովրդական հաւատալիքներու մէջ պատրաստ գետին գտնելով, առանց արգելքի ընդգրկուած է:

3․ Սատանաները: Այս ոգիներու մասին Եզնիկ բաւական առատ նիւթ կը հայթայթէ մեզի: Առաջնը կրնանք սա չորս կէտերուն բաժնել: ա․ Սատանաները չարի արարիչ են․ բ․ օդի կամ մթնոլորտի վրայ կ'իշխեն․ գ․ մարդուն պատահարութիւն, հիւանդութիւններ եւ մահ կը պատճառեն․ դ․ չար երազներ յառաջ կը բերեն:

ա․ Սատանաները չարին արարիչ: Ժողովուրդին աչքին ինչ որ իրապէս կամ երեւութապէս վնասակար ու չար կ'երեւար, չար աստուածութեան մը կը վերագրուէր, որ այդ բանը յառաջ բերած է՝ պարզապէս իրեն ընդդիմամարտ բարի աստուածութեան արարածներուն վնասելու համար: Հայն իբրեւ արեւելեան արիներու ընտանիքին մէկ անդամը, ո՛չ միայն անյիշատակ ժամանակներէ ի վեր ընտելացած էր այս հայեացքին, այլ եւ յիշատակելի ժամանակներու մէջ՝ պարսիկ ցեղին կից ապրած էր, քաղաքակրթօրէն անոր ազդեցութեան ենթարկուած, նաեւ կրօնական հայեացքներուն հաղորդ: Ուստի եւ պէտք չենք զարմանալ, երբ այս երկուորականութեան հոգին կը տիրէր ժողովուրդին վրայ՝ Եզնիկի օրով: Հեղինակիս ինչ ինչ հատուածներէն կը տեսնենք, թէ հեթանոսական չար աստուածութիւններուն դերը՝ սատանաներն ստանձնած են: «Եթէ բնութեամբ չար ինչ էր օձն, կամ չարի իրիք արարած, ապա չգտանէր ինչ ամենեւին ի նմա օգտակար, եւ ոչ զգօնամայր ի դազանութենէ անտի իւրմէ․ նա աւանիկ տեսանեմք ի հնարագիտութենէ թովչաց զգօնացեալ» (74): Օձը շատ անգամ չար աստուածութեան արարած նկատուած է՝ ինչպէս հոս եւ ուրիշ տեղիքներու մէջ կը տեսնուի: Օձի վրայ յետոյ կ'անդրադառնանք: Հատուածիս մէջ Եզնիկ ուղղակի չ'ըսեր, թէ չար ստեղծագործութեան հեղինակը սատանան է․ ուրիշ կտորներու մէջ սակայն յայտնապէս սատանայի կը վերագրէ զայն: Եւ երբ չար արարչութեան վրայ խօսք կ'ընէ՝ ժողովրդական այս հաւատքն ունի աչքին առջեւ: Այսպէս՝ դէչ օդերը յայտնապէս սատանային կամքով յառաջ եկած կը համարուէին․ «Ոմանք դանդաչեցին՝ թէ սատանայ ունէր իշխանութիւն շարժելոյ եւ փոփոխելոյ զօդս» (243):

Նոյնպէս ձիւնը, կարկուտն ու մրրիկը չար աստուածութեան կը վերաբերին․ «Եւ ձիւն եւ սառն եւ կարկուտ եւ մրրիկք՝ թէ յայլմէ արարչէ էին, ոչ կոչէր զնոսա Հոգին ի փառաւորութիւն (իմա՛ փառաւորութիւն), այլ իբրեւ զօտարոտիս մեկուսի դնէր: Բայց

[4] De civ. dei, XV, c. 23:

[5] G. H. Schodde, The Book of Enoch, Andover 1882, 66—67: — Otto Zöckler, Die Apokryphen des Alten Testamentes. München 1891, 430—431:

նա տեսանեմք աւանիկ՝ զի ոչ զնոսա միայն, այլ եւ զվիշապս եւ զգազանս եւ զխաւար եւ զփայլատակունս, զոր ի չարէ դնեն ի նոյն փառաւորութիւն (փառաւորութիւն) նորին Հոգւոյ կոչեցեալ...» (225)։ Ձիւնի, կարկուտի հետ վնասակար համարուած բաներ են երբեմն նաեւ հուրը, հովը եւ այլն, որոնց կարգին կ'երեւայ թէ նաեւ հրեշտակներ (կամ հրեշտակներէն ոմանք) կը համարուէին. վասն զի այս ըլլալու է հետեւեալ խօսքին իմաստը, որ նախորդ տեղիքին հետ ներքին աղերս ունի. «Եւ արդ թէպէտ յայնմանէ իսկ յայտ է թէ որ ինչ ի փառաւորութիւն արարչին կոչի, նորա արարած է, այլ եւ զմիոյ իսկ ի նոցանէ զարարած մարթի ի գրոց ցուցանել։ Նախ զհրեշտակաց... ապա զհրոյ եւ զայլոցն... եւ զխաւարէ... եւ զորոտմանէ եւ զհողմոյ...» (226)։ Միւս կողմէն ցոյց տալու համար՝ թէ ամէն չար կարծուած բան չի կրնար չար աստուածութեան մը վերաբերիլ, կ'ըսէ. «Եւ յարջառ, զոր ասեն՝ եթէ ի բարւոյ արարչէ արարեալ է, գտանի ինչ վնասակարութիւն։ Զցլու միս ուտել՝ դարման է մարմնոյ, բայց եթէ զարիւնն ոք ըմպիցէ՝ սատակի» (77)։

Երկարմատեան վարդապետութիւններու համաձայն են այս տեղիքները։ Հնդիկներու, պարսիկներու, դասական կոչուած ժողովուրդներու քով այս հայեացքը բաւական տիրական է։ Այս մասին յառաջ կ'ուզենք բերել տեղիք մը միայն՝ Թովմա Արծրունիէն[6], որ հետեւեալ կերպով կը գրէ Որմըզդի եւ Արհմնի արարչութեան վրայ. «Որմզդ արար զլոյս, Արհմն արար զխաւար. նա արար զկեանս, սա արար զմահ. նա արար զհուր, սա արար զջուր. նա արար զբարի, սա արար զչար, եւ զի մի՛ մի ըստ միոջէ ասացից, այլ համանգամայն, ամենայն բարիքս Որմզդի է եւ լաւք, եւ չարք եւ դեւք՝ Հարամանւոյն»։

Արդի ժողովրդական հաւատքը թէեւ չար արարչութեան մը աստուածութեան գաղափարը չունի, բայց բազմաթիւ հաւատալիքներով ու ծխակատարութիւններով ցոյց կու տայ, որ դեռ մինչեւ այսօր բարի եւ չար, սուրբ կամ պիղծ բաներու միջեւ խտիր կը դնէ եւ իր երկարմատեան նախահայրերուն ըմբռնումներուն համաձայն կը մտածէ։

բ. Սատանաները մթնոլորտի վրայ կ'իշխեն։ Արդէն տեսանք[7] թէ երկնակամարին տակ բարի եւ չար ոգիները միշտ կը կռուին։ Այս հաւատալիքին հիմը փոթորիկն է՝ յարակից երեւոյթներով։

Հրեշտակներն ու դեւերը, «որք կարող են զօդս դնդել եւ պարզել», երկնքի այդ մասին մէջ ամէն ատեն ճակատամարտ ունին։ Եզնիկ մանրամասնութիւնները կը հաղորդէ. «Ոմանք դանդաչեցին՝ թէ սատանայ ունէր իշխանութիւն շարժելոյ եւ փոփոխելոյ զօդս. ըստ այնմ զոր առաքեալն ասէ՝ թէ ըստ իշխանութեան օդոյս այսորիկ։ Իշխան օդոյս այսորիկ կոչէ զնա՝ վասն յերկնից անկանելոյ եւ յօդս թափառելոյ. եւ յայտ անտի է զոր ասէ՝ թէ օդոյ խաւարիս այսորիկ. զի ցուցցէ՝ թէ ի լուսոյ ի խաւար կործանեալ է, եւ չէ օդոյն փոփոխիչ՝ մերթ յանձրեւս, մերթ ի ձիւն, մերթ ի կարկուտ։ Այլ զի Աստուծոյ գործ է այն եւ ոչ սատանայի, ասասցէ Դաւիթ...» (243—244)։

Հոս զմեզ հետաքրքրողը՝ մասնաւորապէս օդաբնակ սատանան է։ Հին ազգերու դիցաբանութիւնը համաձայն է Եզնիկի տուած այս պատկերին։ Քրիստոնէական առաջին դարերու[8] մատենագիրները՝ Պօղոս Առաքեալին յիշուած տեղիքին վրայ յեցած՝ բացարձակապէս համոզուած էին, որ սատանաներ կը բնակին օդին մէջ։ Եւ որովհետեւ գիտէին թէ սատանաներուն բնակարանը դժոխքն է, անոր համար թէ՛ օդին մէջ եւ թէ՛ դժոխքը կը մտածէին զանոնք։ Այս հայեացքն ամենեւին տարօրինակ չէր իրենց համար, քանի որ կ'ընդունէին թէ այդ օդաբնակ ոգիները մարդը փորձելու համար կը կենան հոն։ Նաեւ համոզուած էին՝ որ Աստուած աշխարհն ու մարդիկը վարելու ատեն՝ հրեշտակները իրեն իբր միջնորդ կը գործածէ եւ թոյլ կու տայ ինկած հրեշտակներուն կամ սատանաներուն, որ բնութեան ոյժերը ի վնաս մարդկան գործածեն. Հրեշտակներն ու սատանաները բնութեան երեւոյթներուն վրայ կրնան իշխել։ Պօղոս առաքելոյն խօսքէն աւելի քաջալերուելով՝ Որոգինէս սատանաները երկիրը շրջապատող

---

[6] Թովմայի վարդապետի Արծրունւոյ՝ Պատմութիւն տանն Արծրունեաց. ի լոյս էած Ք. Պ., ի Ս. Պետերբուրգ 1887, 27։

[7] Հանդ. Ամս. 1929, էջ 638—641։

[8] Adolph Franz, Die kirchlichen Benediktionen im Mittelalter, 2. Bd., Freiburg im Breisgau, 1909, 23—27։

օդին մէջ կը մտածէր։ Իրեն կարծեկից են Ամբրոսիոս[9] եւ Աւգոստինոս[10]։ Կղեմէս Աղեքսանդրացի կ'ընդունի նաեւ՝ թէ հիւանդութիւն, կարկուտ, փոթորիկ եւ այլն ուրիշ պատճառներէ զատ՝ նաեւ սատանաներու բարկութենէն յառաջ կու գայ։ Թովմաս Աքուինացւոյ[11] կարծիքով՝ սատանաները դժոխքի եւ երկնային օդի մէջ կը բնակին փոխն ի փոխ. ստոյգ կը համարի, թէ Աստուծոյ թոյլտուութեամբ չար ոգիները կրնան մթնոլորտը փոթորկել եւ հով ու կայծակ յառաջ բերել։ Պրիսկիլեան աղանդաւորներն ալ որոտման, կայծակի եւ փոթորկի յառաջագայութիւնը սատանային կը վերագրէին։

Մերիններէն յիշենք Ագաթանգեղոսն[12] ու Եղիշէ[13]. «(Հրեշտակք) յօդս վերինս բնակեալ են ի վերայ հաստատութեան»։ «(Բնակութիւն հրեշտակաց) ե՛ւ ի վերոյ են (հաստատութեան) ե՛ւ ի ներքոյ··· կէսք ի ներքոյ երկնից (են)»։

Արդի ժողովրդական հաւատքը կ'ընդունի օդաբնակ բարի եւ չար ոգիներու գոյութիւնը։ Բուլանըխցիները[14] կը պատմեն, որ 12 դաս հրեշտակներէն՝ 3 դասն անհնազանդեցաւ Աստուծոյ, անոր համար երկինքէն գահավիժեցաւ. ոմանք օդին մէջ մնացին եւ մինչեւ հիմայ կը կռուին Գաբրիէլ հրեշտակապետին հետ։ Ալաշկերտցի[15] հայ ռամիկն օդաբնակ հրեշտակներ կ'ընդունի, որոնք Աստուծոյ եւ մարդկան միջեւ պատգամաւորութիւն կ'ընեն։ Վար ինկած 3 դաս հրեշտակներուն առաջին դասն արդէն սանդարամետ հասած էր եւ երկրորդը՝ երկիր, երբ երրորդ դասը դեռ օդի մէջ էր։ Այս վերջիններն իրենց ըրածին վրայ զղջացին եւ գոչեցին. «Կեցո՛ Տէր»։ Անոնց օրինակին հետեւեցաւ երկիր հասած դասը՝ եւ զղջալով ըսաւ. «Տէ՛ր ողորմեա, Տէ՛ր ողորմեա, Տէ՛ր ողորմեա»։ Ասոր վրայ Աստուած թոյլ տուաւ՝ որ սանդարամետ չգահավիժին, այլ կեցած տեղերնին մնան։ Ուստի իրենց գեղեցկութենէն զրկուած՝ դժոխքի, երկրի ու օդի մէջ կը կենան։

[9] In psal. 118: „Hoc enim (inferius) coelum velut medius quidam inter coelum et terram aerius locus dicitur, in quo sunt etiam spiritales nequitiae in coelestibus.

[10] Անդ, l. VIII, c. 22։

[11] A. Franz, անդ, 26 եւ 29։

[12] Վենետիկ 1835, 138։

[13] Անդ, 9։

[14] Ազգ· Հանդ·, Զ, 7· հմմտ· նաեւ Ա, 324։

[15] IX, 265 եւ 267։

Յոյներն ու Հռոմէացիներն[16] օդաբնակ ոգիներով մանաւորապէս փոթորկի ժամանակ կը զբաղէին, երբ անոնք իրարու դէմ խոլ պայքար մը կը մղեն։ Ամպրոպի չար ոգիները վախցնելու եւ վռնտելու համար կը պոռչտային ու զանազան կերպով աղմուկ կը հանէին։ Նոյն բանը կ'ընէին նաեւ լուսնի խաւարման ժամանակ։ Փոթորկի պահուն παππυσμόςի կը դիմէին. այսինքն բերնով կամ մատերով շաչելու ձայն կը հանէին, որպէս զի չար ոգիները ողոքեն կամ անոնց դէմ կռուող բարի ոգիները խրախուսեն։

Արդ հիմայ ըմբռնելի կը դառնայ, թէ ի՛նչ դեր կը վերագրէ ժողովրդական հաւատքը սատանաներուն՝ բնութեան տարրերը ոտքի հանելու մէջ։ Յայտնի է որ օդը բնակելով՝ ոգիները սերտ յարաբերութեան մէջ կը մտնեն — ըստ երեւոյթին — անձրեւի, կարկուտի, որոտման[17] հետ։ Այս հաւատալիքն անո՛վ աւելի կը զօրանայ, որ այդ չար ոգիները քանի որ մարդուն վնասելու յարատեւ կամքն ունին, նաեւ բնութեան տարրերն ու երեւոյթները կրնան օգտագործել, պարզապէս իրենց այս փափաքին հասնելու համար։ Եւ Հայաստանի պէս երկիր մը, որուն մթնոլորտին մէջ ամեհի փոթորիկներ կը պայթին սովորաբար, որուն բարձրաբերձ լեռներուն կատարները շատ սէպ չանթահար կ'ըլլան, որուն ձմեռը նշանաւոր է իր խստութեամբ, ուր գիշերուան խաւարը «աղամամութին» կը հաւասարի եւ ջաղբերը ողողում յառաջ կը բերեն, շատ նպաստաւոր էր նման հաւատալիքի մը զարգացման։ Մինչեւ օրս՝ ժողովուրդը փոթորկի պահուն ոգիներու մա՛րտը միայն կը տեսնէ՝ չղթայազերծ տարրներու մէջ. չանթը հրեշտակին սուրը կամ նիզակն է, որ կը շողայ փայլատակի երեւման ատեն. որոտումը հակամարտ բանակներու բախումին ժխորն է, կամ՝ չար ոգիներու պոռչտուքը[18]։

[16] A. Franz, „Die Gewitter und die Dämonen“, անդ, 93—40։

[17] Եզնիկ կը շեշտէ որ սատանաները միայն չե՛ն որ օդի վրայ կ'իշխեն, այլ նաեւ հրեշտակները։ Յատկանշական է այս տեսակէտով Բուլանըխցիներու հայեացքը, որուն համաձայն մինչեւ ձմեռ երկինքը ձիւն կ'ամբարուի. եւ ձմեռը հրեշտակները ոտքով վար կը թափեն զայն։ Նոյն բանը կ'ընեն նաեւ կարկուտին. բայց վար թափելէ յառաջ՝ կը կլորցնեն զայն. Ազգ· Հանդ· Զ· 40· հմմտ· Radermacher, Griech. Quellen zur Faustsage, 44։

[18] Հմմտ· Bernhard Geiger, Die Aməša Spəntas, Wien (Sitzber. d. kais. Akad. d. Wiss., Phil.-

գ. Այսահարութիւն, հիւանդութիւններ եւ մահ սատանայէն յառաջ կու գան: Սատանաները մարդուն վնասելու համար ո՛չ միայն բնութիւնը եւ ուրիշ միջնորդներ կը գործածեն, այլ նաեւ ուղղակի մարդուն հոգւոյն եւ մարմնոյն կը զգացնեն իրենց մահաբեր կարողութիւնը: Այս հայեացքը մանաւորապէս այսահարութեան եւ մարմնաւոր հիւանդութիւններու համար կ'արժէ:

Այսահարութեան երեւոյթը միայն սատանաներով կրնայ բացատրել սին հաւատքը: Կախարդները մեծ դեր ունին դիւահարութիւն յառաջ բերելու մէջ. «Կախարդք, ասեն, յղեն դեւս եւ հանեն դեւս» (100): Եւ երբ թէ սատանան անգամ մը մարդուն մէջ մտնելէ յետոյ՝ այլ եւս միտք չ'ունենար անկից դուրս ելլելու, ոմանք կը խորհրդածեն. «(Կախարդք զդեւս) հանել չկարեն, բայց անդէն կապել մարթեն. զի համապաղ խեղդ ընդ անձն հոգւոյն մարդոյն դեւն լինիցի»: Ոչ միայն սատանան դիւահարին մէջէն ելլել չ'ուզեր, այլ եւ վհուկն ալ իր արուեստին զօրութեամբ՝ զայն դիւահարին մէջ կը կապէ, որ բնա՛ւ չելլէ դուրս:

Եզնիկ սնահաւատ ռամիկը համոզել կ'ուզէ՝ թէ կախարդները մարդուն մէջ դեւ չե՛ն կրնար ղրկել, եւ սապէս կը տրամաբանէ. «Ո՞ ոք ի կախարդաց», կը հարցնէ, «անցաւ եւ անդեւ եւ անմահ իցէ: Նաեւ տեսանեմք իսկ զկախարդսն միշտ ծնկեալս ի դիւացն, եւ մանաւանդ մոլիքն[19]. զի նախ ինքեանք դիւահարին, եւ ապա այլոց իմն խոստանան տալ, որ չիցէ ի ձեռս՝ ոչ նոցա եւ ոչ դիւացն, որոց բանիւ խօսին տալ ինչ ումեք» (100—101): Եւ մի եւ նոյն ջատագովական լեզուով՝ նոյն նիւթն ուրիշ տեսակէտով դարձեալ կը կրկնէ. «Եւ արդ քան անդէն կապել կախարդացն զդեւն՝ որպէս ասենն, եւ խեղդ ընդ անձն միշտ ոգւոց մարդոցն առնել, լաւ էր թէ յայտնէր, եւ սրբովք աղաչեցեալ զԱստուած՝ օգնականութիւն գտանէր բուժելոյ ի չարէն» (101):

Եղիշէ, ինչպէս շատ անգամ տեսանք, Եզնիկի կը հետեւի[20] այս կէտիս մէջ ալ: «Եւ ընդէ՞ր դիւաց հրամայեն կախարդքն, եւ նոքաւք զորս կամին չարչարեն», կը հարցնեն սնահաւատներն: «Ի բա՛ց տար զայդ». վրայ կը բերէ Եղիշէ դժկամակութեամբ, «սուտ են որք այդպիսեաց հաւատան. քանզի կախարդքն չարչարին ինքեանք ի դիւաց, եւ ոչ կարեն զայլս չարչարել, բայց թէ Աստուած թոյլ տացէ դիւացն: ...Եւ թէ ոչ ամենազաւր ձեռն նորա պահէր զսպասաւորս դիւացն զկախարդսն եւ զայլս, վաղվաղակի չարամահս առնէին զնոսա»:

«Դիւահար» եւ «այսահար» բառերն ար-

hist. Klasse, 176· Band, 7· Abh.), 1916, 64—65, ուր ոչ միայն Եզնիկը համեմատութեան կը դործածէ, այլ նաեւ հայ ժողովրդական հաւատքը, հնդկական եւ իրան ամպրոպային վիշապներու վրայ խօսած ատեն: — Ինչպէս հայերը անձրեւ, կարկուտ, փոթորիկ եւ այլն յառաջ բերող հրեշտակներ եւ սատանաներ կը ճանչնան, այդպէս նաեւ Տաբարի խաւարաբեր հրեշտակի մը մասին խօսք կ'ընէ. «Արեւելքի կողմը՝ եօթներորդ երկնքին տակ Աստուած խաւարի քող մը ստեղծեց, եւ այդ խաւարին վրայ հրեշտակ մը գլուխ դրաւ ամէն գիշերի համար՝ մինչեւ այն ժամանակը, որ խաւարն սպառի: Երբ արեւը մար մտնելու կը սկսի, հրեշտակը ձեռքը մխրճելով՝ ափ մը կ'առնէ խաւարէն: Ձեռքը կը բանայ եւ դէպ ի արեւմուտք կը դառնայ. խաւարին մէկ մասը մատներուն անջրպետէն կը թողու՝ որ երթայ եւ աշխարհիս վրայ տարածուի: Յետոյ՝ երբ վերջալոյս տիրէ, հրեշտակը ձեռքը կը բանայ, որպէս զի ամբողջ խաւարը ելլէ անկից: Վերջը թեւը կը տարածէ. արդ անոր թեւերը երկնքէն մինչեւ երկիր կը հասնին, եւ հրեշտակը մինչեւ արեւմուտք կը քշէ խաւարը: Երբ արեւմուտք հասնի, արշալոյսը կը ծագի: Հրեշտակը թեւն կը պարզէ, խաւարը թեւին մէջ կ'առնէ, յետոյ ձեռքին մէջ կը փոխադրէ զայն ու արեւմուտք՝ եօթներորդ երկնքին տակ կը զետեղէ: Այն տեղէն, որուն մասին խօսեցանք, կու գայ գիշերուան խաւարը: Երբ որ արեւելքի խաւարի քօղն արեւմուտք ըլլայ, փող պիտի զարնեն եւ վերջին դատաստանի օրը պիտի ծագի». Tabari, Chronique, trad. par Zottenberg, p. 27—28:

[19] Եզնիկ հոս կախարդներու զանազանութիւն կ'ընէ. անոնցմէ ոմանք, որ «մոլիք» կը կոչուին, մասնաւոր տեսակ մը կը կացուցանեն: Հետաքրքրական եւ թանկագին բառ մըն է այդ «մոլի» բառը, որ տեսակ մը կախարդ կը նշանակէ, ինչպէս արդէն Հեղինակն ինքը կը չեշտէ: Մոլի բառը թէ' առանձին եւ թէ' ուրիշ բառերու կից՝ սովորաբար «խենթ, կատաղի» եւ նման իմաստներ կ'արտայայտէ: Եզնիկի այդ հատուածը սակայն նո՛ր լոյս կը սփռէ խնդրական բառին եւ յարակից բարդութիւններուն վրայ. բառը ո՛չ միայն «խենթ, կատաղի» եւ այլն կը նշանակէ կամ կը նշանակէր, այլ նաեւ տեսակ մը «կախարդ, գուշակ» իմաստ ալ ունէր:

Համոզուելու համար թէ անհիմն չէ այս մեկնութիւնը, նկատենք Գործք Առաքելոցի հետեւեալ տեղիքը (ԺԶ, 16). «Եւ եղեւ մինչդեռ երթայաք մեք յաղօթս, պատահեաց մեզ աղախին ոմն՝ զոր ունէր այս հարցուկ, որ (աղախինը) շահս բազումս տայր տերանց իւրոց մոլեկով»: Ընդգծուած բառս յունարէնի եւ լատիներէնի մէջ սապէս գործածուած կը գտնենք. «...ἥτις ἐργασίαν πολλὴν παρεῖχεν τοῖς κυρίοις αὐτῆς μαντευομένη». — «quae quaestum magnum praestabat dominis suis divinando»: Յունարէն եւ լատիներէն բառերը «գուշակելով» բայը կը գործածեն՝ հայերէնի «մոլելով» գաղափարն արտայայտելու համար. «իր տէրերուն շատ բան շահիլ կու տար գուշակելով (կամ) գուշակութիւն ընելով»: Յունարէնի եւ լատիներէնի մէջ «այս հարցուկ»ին կը համապատասխանէ πνεῦμα πύθωνα, որուն վրայ հոս չենք կրնար ծանրանալ: «Կախարդներու» վրայ գրելու ժամանակ կ'անդրադառնանք «մոլիի» հարցին:

[20] Անդ, 23:

դէն բաւական են ցոյց տալու՝ թէ մեր նախահայրերն ի՛նչպէս ըմբռնած են խնդրին նիւթ հիւանդութիւնը։ Եթէ Եզնիկէ կամ ուրիշ մատենագիրներէ ո՛չ մէկ յիշատակութիւն հասած ըլլար մեզի այս հիւանդութեան մասին, միայն «դիւահար(ութիւն), այսահար(ութիւն)» բառերը բաւական պիտի ըլլային պարզելու հիւանդութեան ամբողջ էութիւնը։

Այսահարութեան նման շատ հիւանդագին երեւոյթներ կան, զորոնք անահաւատ ժողովուրդը սատանաներուն կու տայ։ Այս պատճառով Եզնիկ դէմ կ'ելլէ այս հայեացքին, սակայն առանց բոլորովին ինք զինքը կորզելու նման հայեացքներէ, որոնք իրեն ժամանակակից ըմբռնումներն էին։ Այս մասին կը գրէ․ «Եւ ոչ ամենայն թալանալ եւ ցնորել մարդկան ի դիւէ է, այլ է՝ որ ի մաղձոյ է, եւ է՝ որ ի մաղասէ, եւ է՝ որ յուղղոյն անանալոյ, եւ է՝ որ ի ստամոքսէ խանգարելոյ, եւ է՝ որ յորովայնէ խստանալոյ, մինչեւ ցփրփրել անգամ եւ զաչս յեղյեղուլ... Այլ յուղղոյն անանալոյ՝ եւ ի մտաց իսկ անկանի մարդ, եւ խօսի ընդ որմս եւ կագի ընդ հողմս։ Ուստի բժիշկք յամառին՝ թէ բնաւ չիք դեւ որ ի մարդ մտանիցէ․ այլ ցաւք են այն, եւ մեք զարմանովք կարեմք բժշկել։ — Այլ մեք (կ'ըսէ Եզնիկ) զայն ոչ ասեմք (107)․ քանզի... բազում դեւք, իբրեւ տեսանէին զՅիսուս, աղաղակէին եւ ելանէին ի մարդկանէ... Եւ լուսնոտքն որք ասեն, ո՛չ եթէ լուսնոյ վնասել՝ այնպիսիք կոչին, այլ դաս ինչ է դիւաց՝ որ ըստ լուսնոյ յայտնին» (208)։

Ինչպէս ակնյայտնի կ'երեւայ՝ այսահարութիւն ու նման երեւոյթներ Եզնիկ եւ ժողովուրդն ուղղակի սատանային կը վերագրեն։ Ուստի եւ այդ երեւոյթներուն մէջ խիստ զանազանութիւն մը չեն դներ։ Զարմանալու չէ այս բանին վրայ․ վասն զի Եզնիկի ժամանակ ու անկէ յետոյ՝ Միջին դարու մէջ — ինչպէս միջնադարեան սին հաւատքով պարապած հմուտ հեղինակ մը[21] կը վկայէ — նոյն իսկ աստուածաբաններու քով կարելի չէ եղած գտնել որոշ դատանիշ մը, որուն շնորհիւ կարելի ըլլար ըսել՝ թէ մատենագիրները հիւանդագին բնական վիճակներն այսահարութենէն կը զանազանէին։ Առհասարակ ամէն կարգի հոգեկան կամ մարմնական հիւանդութիւն obsessio (դիւահարութիւն) կը նկատուէր․ այս կ'արժէր մանաւանդ վերնոտութեան (epilespie) եւ լուսնոտութեան համար։

[21] A. Franz, II, 527—528։

Եգիպտացիները[22] կ'ընդունէին թէ մեռելներու հոգիներէն ոմանք, որոնք դատապարտուած են դժոխքի մէջ, հոն չեն կրնար կենալ եւ աշխարհ կը վերադառնան․ հոս անօթեւան կը թափառին, մինչեւ որ յաջողին մարդու մը մէջ մտնել, որով վերջինս կը դիւահարի։ Կովկասի Չէչէնները[23] կը հաւատան, որ չար ոգիներէն ոմանք կրնան մարդուն հետ բարեկամութիւն ընել․ բայց անոնց բարեկամութիւնը վնասակար է, վասն զի գրեթէ միշտ խենթութեան կը տանի մարդը։ Անոր համար կը հաւատան, թէ պանդոյրներն ու հոգեպէս հիւանդներն այդ ոգիներուն հետ առնչութեան մէջ են։ Վրացիներու[24] համաձայն՝ ամպրոպի ժամանակ Ս․ Գէորգ շանթով կը հետապնդէ սատանաները, որոնք կը ջանան մարդու բերնէն ներս սպրդիլ՝ զայն այսահար ընելու համար։ Ջաւախքցիներու[25] հաւատքով՝ յորանջելու ատեն սատանան մարդու փորը կը մտնէ, եթէ չխաչակնքուի․ վասն զի չար ոգին միշտ մարդուն մէջ մտնել կը փափաքի։ Սրուանձտեանց[26] յառաջ կը բերէ․ «Մարդ որ օրօչկայ, բերնին վրէն խաչ չհանէ, գրողները կը մտնեն մարդու փոր կը դիւահարցուցեն»։ Բորչալուի[27] մէջ փնգտալու ատեն կը խաչակնքուին․ այլապէս սատանան կրնայ փնգտացողին փորը մտնել։ Նոր Բայազէտի[28] մէջ նշանաւոր կախարդներ կան, որ «դեւ կը կապեն»․ այսինքն դիւահարը կէս մութ սենեակի մը մէջ կը նստեցնեն եւ՝ նոյն իսկ ժամերով՝ առջեւը դրուած ջրալից ամանի մը մէջ նայիլ կու տան, ըսելով թէ անոր փորը մտած սատանան ուրիշ դեւերու հետ երբ ջուրի մէջէն անցնի, զայն բռնէ եւ իրենց ձեռքը յանձնէ։ Եթէ դիւահարը չտեսնէ իր դեւը, կախարդը կը բարկանայ անոր վրայ եւ նոյն իսկ կը ծեծէ

[22] Orelli, I, 177։
[23] A. Dirr-Baschir Dalgat, Die alte Religion der Tschetschenen, Anthropos, III. Bd., Wien 1908, էջ 1051։
[24] Bleichsteiner, Kaukasische Forschungen, II, Wien 1919, LXI.
[25] Ազգ· Հանդ·, Ա, 329։
[26] Մանանայ, 81։
[27] Ազգ· Հանդ·, X, 249։
[28] XVII, 115։

*գինքը, մինչեւ որ այսահարը բռնելու շարժումներ ընէ. այն ատեն կախարդը կը խօսեցնէ դեւը եւ զայն կը կապէ՝ ըսելով թէ այս հիւանդին չմօտենայ այլեւս*[29]:

Հիւանդութիւնները *նմանապէս սատանաներու կը վերագրուէին: Ամէն հիւանդութիւն կ'երեւայ թէ որոշ չար ոգիի մը հետ կապուած էր: Հակառակ անոր, որ ժամանակին բժիշկներէն շատերը կը պնդէին թէ անհիմն է այս կարծիքը, բայց հայ ռամիկը չէր հրաժարէր անկէ. վասն զի իր սին հաւատքը վաղնջական ժամանակներէ իբր աւանդ ընդունած էր եւ իրեն կարծեկից ունէր մերձաւոր եւ հեռաւոր ազգերը: Իր կատարած տնային բժշկութիւնը ո՛չ թէ իրական բժշկութիւն էր, այլ մեծ մասով կախարդներու ձեռքով հաւաքուած եւ այլազան յուռութներու ենթարկուած՝ դարմանող նիւթերու գործածութիւնն:*

*Ասորաբաբելացիներու*[30] *համաձայն երբ պաշտպան աստուածութիւն մը բարկանար եւ հեռանար իր պաշտպանեալէն, ասիկա անմիջապէս սատանային ձեռքը կ'իյնար եւ հիւանդութիւններու բանակէ մը յարձակում կը կրէր: Տալմուտական րաբբունիները որոշ մեղքերու հետ կը կապեն իւրաքանչիւր հիւանդութիւն, զոր* շէդիմ *կոչուած սատանաները — եւ մանաւանդ իրենց Ասմադայ պետը — մարդուն վրայ կը ղրկեն: Շատ նման են այս հաւատալիքներուն հնդկական, եգիպտական, յունական եւ ուրիշ ազգերու հայեացքները*[31]: *Հռոմայեցիները մէն մի հիւանդութեան համար ոգի մը ունէին, որուն կամքէն կախում ունէր մարդուն առողջ կամ հիւանդ մնալը: Անոր համար ալ անոնց քով բժշկութիւն չկար հին ատեն եւ Պլինիոս*[32] *շատ չի չափազանցեր՝ երբ կ'ըսէ՝ թէ Հռոմի մէջ 600 տարի բժիշկ չէ եղած:*

*Այս հին հաւատալիքներուն արձագանգը նաեւ եկեղեցական մատենագիրներու քով կը գտնենք: Տատիանոս կ'ըսէ՝ թէ հիւանդութիւնները սատանաները կը ղրկեն մարդուն վրայ. իրեն կարծեկից են Մինուկիոս Փելիքս*[33], *Տերտուղիանոս*[34] *եւ Իսիդոր*[35] *Սեվիլլացի:*

*Արդի սին հաւատքը ո՛չ միայն դրողները կ'ընդունի իբրեւ հիւանդութեան եւ մահուան չար ոգիներ, այլ եւ ուրիշ մանր ոգիներու զանազանութիւն կ'ընէ, որոնցմէ իւրաքանչիւրը հիւանդութիւն մը կու տայ: Ջաւախքի*[36] *մէջ «ժողովուրդը երեւակայում է հիւանդութիւնները որպէս փոքրիկ էակներ», կ'ըսէ Ե. Լալայեան, «գլխներին եռանկիւնաձեւ «սըլըլիկ» գլխարկ ծածկած: Ձեռներին բռնած երեք ճպոտ — կանանչ, կարմիր, եւ սեւ: Առաջնորդն ստանում է Աստուծուց մի տետրակ, ուր նշանակուած են լինում հիւանդացողների եւ մեռնողների անունները եւ սրանք նայելով այդ տետրակին՝ կանանչ ճիպոտով խփում են նրան, ով դատապարտուած է կարճատեւ հիւանդութեան, կարմրով նրան, ով պիտի երկար ծառայէ անկողնին եւ սեւով նրան, ով պիտի մնաս բարով ասի այս աշխարհին»: Գանձակեցիները*[37] *կ'ուզեն հաւատացնել, որ ցաւերը փոքրիկ երեխաներ են. եթէ (աներեւութաբար) իրենց սեւ գաւազանով զարնեն մէկու մը՝ կը հիւանդանայ ու կը մեռնի. իսկ եթէ կանանչ գաւազանը գործածեն, անով զարնուած հիւանդը կ'առողջանայ: Անոնց առաջնորդութիւն կ'ընէ այր մը կամ կին մը («գգիր»), որուն հետեւելով՝ անոնք մահ կամ հիւանդութիւն կը տանին ա՛յն տներն, ուր կը մտնեն: Միայն ջերմի ոգին առաջնորդ չունի: Կաղնիի վրայ կը բնակի. անոր համար ջերմ*

[29] *Վասպուրականի ռամիկը «խպլիկ» անունով ոգիներ կ'ընդունի, որոնք «շատ մանր չար ոգիներ են... մարդկանց յօրանջելիս կարող են բերանը մտնել, եթէ որ չեն շտապում խաչակնքուել: Իսկ փռնգտալիս՝ այս արդէն կուլ գնացած խպլիկները դուրս են նետւում. ուստի եւ ներկայ եղողները բարեմաղթում են՝ թէ «խեր էլնի»: Երբ այս խպլիկները մտնում են մարդկանց փորը, նրանց խենթացնում են. եւ տրամադրում չարունակ իրենք իրենց խօսելու: Ուստի եւ ժողովուրդը միամեանց հետ զուարճացող, ասող խօսողների վերաբերմամբ ասում է. Դարձել են խեւ խպլիկ»: (Ե. Լալայեան).* XXV, 59:

[30] O. Weber, Dämonenbeschwörung bei den Babyloniern und Assyrern, Leipzig 1906, *էջ* 185, 244:

[31] A. Franz, *անդ*, 400—406:

[32] Naturalis Historia, XXIX, 11:

[33] Octavius c. 27: „Sic daemones... morbos fingunt, terrent mentes, membra distorquent, ut ad cultum sui cogant, ut nidore altarium vel hostiis pecudum saginati, remissis, quae constrinxerant, curasse videantur".

[34] Apologeticus c. 22: „...corporibus quidem et valetudines infligunt et aliquos casus acerbos, animae vero repentinos et extraordinarios per vim excessus".

[35] De ordine creaturarum VIII, c. 16: „Fallacias atque in fraude callidi hominum sensus commovent terroremque mortalibus inferentes, inquietudinibus somniorum et morbis et distortione membrorum vitam turbant, praestigia atque oracula fingents regentesque sortem, cupidinem illiciti amoris et cupiditates humanis cordibus infundunt" etc.

[36] Ազգ. Հանդ., *Ա*, 398:

[37] *Զ*, 354:

ունեցողներն իրենց վրայէն կտոր մը լաթ կը կտրեն եւ կաղնիներու վրայ կը կապեն, որ այդ լաթին հետ իրենց ջերմն ալ ծառին վրայ փոխադրուի: Ծաղկի հիւանդութեան ոգին կին մըն է՝ ծաղկամայր անունով. միւս ոգիներուն պէս չար չէ ան, այլ բարի եւ քնքուշ: Արիւն չի սիրեր. այս պատճառով անոր արիւնային զոհեր չեն մատուցաներ: Բորչալուցիներու[38] համեմատ իւրաքանչիւր հիւանդութիւն տեսանելի ոգի մըն է: Ե. Լալայեան[39] Վասպուրականցիներու համար կը հաստատէ, թէ «շատ հիւանդութիւններ, ինչպէս դող, մշտատեւ գլխացաւ, լուսնոտութիւն, սատանաների նիւթած են համարում եւ «չարոց» կոչում»:

Զանց կ'ընենք այս տեսակէտով գրողներու վրայ աւելի ծանրանալ, որոնք յիշուած ոգիներուն հետ մեծ նմանութիւն եւ երբեմն նոյնութիւն ունին:

Մահուան պաշտօնեայ կամ հոգէառ են սատանաները, ինչպէս որ քիչ մը վերը Եզնիկ հրեշտակներու եւ դեւերու համար բսաւ:

Ռամիկը հաւատք ունի՝ թէ ծնունդի վայրկեանին ամէն երեխայ իրեն համար երկու հրեշտակներ կ'ընդունի. մին բարի, իսկ միւսը չար: Անոնք շարունակ ետեւէ կ'ըլլան, որ մարդը իրենց թելադրութիւններուն հետեւի եւ իւրաքանչիւրն իր գրքին մէջ կը նշանակէ մարդուն բարի կամ չար գործերը: Մահուան վայրկենին դարձեալ երկու հակամարտ հրեշտակներ կու գան՝ հոգեվարքի մէջ եղողին հոգին գրաւելու. այդ վայրկեանը ճգնաժամային է, ո՛չ միայն կռուող ոգիներուն, այլ նաեւ մահամերձին համար. վասն զի իր հոգին յաղթող կողմին պիտի վերաբերի: Եւ յաղթութեան պայմանը յայտնի է. եթէ չար կեանք վարած է մարդը, սատանաները կը յաղթեն. իսկ եթէ ո՛չ՝ հրեշտակները: Առաջին պարագային՝ հոգին դժոխք կը տարուի, երկրորդին՝ երկինք:

Ուստի եւ մահուան պաշտօնեայ ոգիները երկու տեսակ են. ոմանք բարի են եւ հոգին երջանկացնել կ'ուզեն. իսկ ոմանք չար՝ եւ զայն դժբախտ ընել կը ջանան:

Գաբրիէլ եւ Միքայէլ[40] հրեշտակապետները ժողովրդական համոզումով հոգէառ հրեշտակներ են: Գաբրիէլ չարերը սուրի հարուածով կը սպաննէ. իսկ բարիներու քթին անմահական խնձոր կը մերձեցնէ եւ հոգին առանց ցաւի կ'առնէ:

Պաշտօնապէս հոգէառ են գրող ոգիները: Իրենց անունն անկից ծագած է, որ գիրք մ'ունին, որուն մէջ հիւանդանալիք կամ մեռնելիք մարդուն անունը կը գրեն եւ կ'ըլլան «գրող»: ԺԸ. դարու առաջին քառորդին՝ Մելքոն Երէց Կեղեցի[41] իր թոռան մահը կ'ողբայ ոտանաւորով մը, որ այսպէս կը սկսի.

«Մահն ու գրողը էկաւ աշխարհիս տիրեց,
Առաւ դխիթ, ղալամ դէւատարին գրեց.
Կարմիր գրէն հանեց սեւ գիրն գրեց...»:

Տարօնցիները[42] գրողներու պատկերը կու տան. «Գրողներաց գլօխ ամպերաց մէջն ի, ոտքեր գետնի տակ անդունդք հասեր ի. իղոնց իրեսներ սեւ՝ քանձ Աղամայ մութ, իղոնց մըռթներ (չրթունք) կախուեր ի չում (մինչեւ) ուրենց ծնկուեր. բերըններ քանձ Վանայ ծով, լեզուըներ մէջ քանձ Վանայ բերդ, քիթ՝ քանձ Սիփանայ սար: Խոզու պէս մազոտ ի իղոնց լէշ. ըմէն մազից բոց կ'էլնի, կրակ կը թափի: Հաւքու պէս թեւ ունին կը թռնեն, իսանի պէս կը քէլեն. մէկ ոտ Բաղդատն ի, մէկ ոտ կը թալի (հասնի) Սեւ ծով. մէկ ձեռ կը խասնի Չինմաչին, մէկ ձեռն կը պարզի Ֆրանգստան: Ուզեն կը պատիկնան կ'էլնեն քանձ լու մը ու անիծ, ուզեն կը դառնան քանձ երկինք գետին պատող սեւ ամբ մը: Ըմէն գրողն իր սինօրն ունի. կը պըտտեն, ռաստ էկածին կը զարնեն... մեռնողներաց որու ոտքը, որու թեւ, որու քամակը,

[38] X, 211:

[39] XXVI, 202:

[40] Խմինեան ազգ. ժող., Բ., 196. 332. Ազգ. Հանդ. Ե, 182: Յովհաննէս Գազանճեան, Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը, Վիեննա (Ազգ. Մատենդ. ԼԴ), 1899, էջ 38: Բիւրակն, 1899. 437: Արեգեան, Հայ ժող. վէպը, 187: Գրիգոր Կաթողիկոս Աղթամարցւոյն վերագրուած ոտանաւոր մը՝ հետեւեալ տողերով կը խօսի հոգէառ Գաբրիէլի վրայ, Տ. Պալեան, Հայ Աշուղներ, Ա, Զմիւռնիա 1911:

«Գաբրիէլն եկաւ հոգւոյս,
Ահէն կապեցաւ լեզուս
Խօրաւ աչերս ի լուսոյս
Աւա՜ղ իմ կարճ արեւուս.
Առին զհոգիս ի մարմնոյս» (էջ 105):

«Ցամէն առաւօտ եւ լոյս
Գայ Գաբրիէլն առէ(ր) հոգոյս
Արի ել...» (104):

«Հրեշտակն է կապներ հոգոյս,
Ցահէն կապեցաւ լեզուս.
Եհան զհոգիս ի մարմնոյս,
Ափսո՜ս կանանչ արեւոյս» (151):

[41] Ազգ. Հանդ., Բ, 291:

[42] Մանանայ, 79—80:

*որու երեսը, որու ուրիշ տեղ մը կը կապուտնայ, գրողի զարկած ճպողի տեղն է»: Բուլանըխցիները[43] կ'ըսեն՝ թէ երբ հողէառ Գաբրիէլ հրեշտակը մեռելի հոգին առած երկինք կը տանի, օդաբնակ սատանաներն անոր ճամբան կը կտրեն եւ կը ջանան հոգին անոր ձեռքէն յափշտակել ու դժոխք տանիլ: Նոյներուն հաւատքով՝ գրողը մարդու հոգին առնելէ յառաջ՝ հոգեվարին բերանը պատառ մը կը դնէ· ասոր վրայ մարդը կը մեռնի: Անոր համար Բուլանըխցիներու քով սովորական անէծք մըն է հետեւեալը· «Գրողի բրդուճ դնեմ քու բերան»: Երկու տեսակ հրեշտակ կ'ընդունին Բորչալուցիները[44]· բարիներն սպիտակ են եւ գոյնզգոյն թեւերով, իսկ չարերը՝ սեւ: Միշտ իրարու հետ կը կռուին հիւանդներու եւ ծննդականներու քով, բարին աջ կողմը, չարը՝ ձախ: Ով որ կը յաղթէ կը տիրանայ անոնց հոգւոյն: Ջաւախքցիները[45] կը հաւատեն՝ թէ օդաբնակ ոգիներու (ինկած հրեշտակներու) պետը «ուղղակի կտրում է հոգիների ճանապարհը եւ եթէ «բարութեան ձեռագիր» չունին, քաշում տանում է դժոխք, սատանաների եւ մեղաւորների կայանը, ուր ոսկի աթոռի վրայ նստած թագաւորում է» անոնց պետը: Ալաշկերտի[46] հաւատքը նման է ասոր· երբ հողէառ հրեշտակները հոգին առած երկինք տանիլ կ'ուզեն, օդաբնակ սատանաներն առջեւնին կ'ելլեն եւ «մե՛րն է» ըսելով կը յարձակին: Եթէ հոգին երկրի վրայ իրապէ՛ս չար կեանք անցուցած է, սատանաները կը յափշտակեն զայն եւ սանդարամետ կը տանին: Իսկ Գաբրիէլ հրեշտակապետն ու իր ընկերները, որոնք հոգին բերած էին, տխրութեամբ երկինք կը վերադառնան: Բայց եթէ բարի եղած է հոգին, հողէառ հրեշտակները զայն երկինք կը տանին: Նոր Բայազէտցիները՝ կ'ըսեն թէ արդարին հոգին Գաբրիէլ հրեշտակը կ'առնէ· ձեռքը հրեղէն սուր բռնած անոր կը մօտենայ եւ վարդ մը կու տայ: Մինչդեռ չարին հողէառը «չար հրեշտակն» է, որ «գրողի դգլի» առաջնորդութեամբ մեռնելիքին քով կու գայ եւ անոր «արինաթաթախ հոգին» շիկացած շամփուրի մը մէկ հարուածով մէջէն դուրս կը հանէ: Վարդի փոխարէն ալ փուշ կու տայ ձեռքը:*

*Հողէառ եւ մահաբեր հրեշտակներու վրայ արդէն Ս. Գիրքը խօսք կ'ընէ, ինչպէս Եզնիկի նիւթիս հայող տեղիքէն ալ կարելի է արդէն ենթադրել: Դանիէլ[47] երկու չար ծերերուն կ'ըսէ, անոնց մեռնելէն անմիջապէս յառաջ· «Ահաւասիկ հրեշտակի Աստուծոյ առեալ հրաման հերձցէ զքեզ ընդ մէջ... Կայ ահաւասիկ հրեշտակ Աստուծոյ, սուսեր մերկ ի ձեռին սղոցել զքեզ ընդ մէջ»: «Եթէ[48] լիցեն հազար հրեշտակք մահաբերք, մի ի նոցանէ զնա մի՛ խոցեսցէ: — Մեռցի յերիտասարդութեան անձն նոցա եւ կեանք նոցա խոցոտեալք ի հրեշտակաց»:*

*Այս հայեացքը կը յիշեցնէ Շարակնոցը, Հրեշտակներու տօնին «Մանկունքին» մէջ· «Բարեկամք ազգի մարդկան, միջնորդք մահու եւ յարութեան. Միքայէլ եւ Գաբրիէլ մեծք»: Ժողովրդական հաւատքով է որ կը դոչէ Ներսէս Շնորհալի· «Բարերար Տէր, հրեշտակի բարւոյ յանձն արասցես զիս՝ քաղցրութեամբ աւանդել զհոգի իմ. եւ անխռով անցուցանել ընդ չարութիւն այսոցն, որ են ի ներքոյ երկնից»: Ննջեցեալը կը խօսեցնէ· «Եկն եհաս օր վախճանի իմոյ... ի մահիճս իմ զարթուցին զիս պահանջողք հոգւոյ իմոյ. տանէին զիս ճանապարհ հեռաւոր զոր ոչ գիտէի. ...նայեցայ եւ ոչ ոք էր որ օգնէր ինձ. ապաւինեցայ յԱստուած ——— գրեցայ ես ի գիր կենդանութեան»:*

*Արդի ժողովուրդներու հաւատքէն համեմատենք գերմանականն ու յունականը: Առաջիններու մէջ[49] դեռ հաւատացողներ կան, որ մէկու մը մահուան ժամուն՝ հրեշտակներու եւ սատանաներու բանակները դաւն կռիւ մը կը մղեն, անոր հոգին գրաւելու համար: Գալով Յոյներուն[50], դրեթէ կէտ առ կէտ կը համաձայնի անոնց սին հաւատքը՝ հայկականին. Միքայէլ հրեշտակապետն Աստուծմէ կը ղրկուի որ մեր հոգիները տանի: Մարդը երկու հրեշտակ ունի. բարի եւ չար. բարին, մարդուն աջ ուսին վրայ է, չարը՝ ձախին: Մեր «գրողի զարկած» բացատրութիւնն է իրենց* ἀγγελοχρούω,

43 Ազգ. Հանդ., Զ, 7 եւ 8:
44 X, 204:
45 Ա, 329:
46 IX, 267: *Նոր Բայազէտցիներու հայեացքը*, XVI, 58:

47 *ԺԳ*, 55, 59:
48 *Յովբ*, ԼԳ, 24. ԼԶ, 14:
49 E. L. Rochholz, Deutscher Glaube und Brauch, I. Bd., Berlin 1867, 168—169:
50 G. N. Hatzidakis, *Ἄγγελος* und Verwandtes, Wien (Sitzber. d. kais. Ak. d. Wiss., phil.-hist. Kl., 173. Bd, 2. Abh.) 1913, 1—11:

ἀγγελοχρούομαι=«հրեշտակէ կը զարնուիմ, կը մեռնիմ» բառերը. αγγελόχρουστος= հրեշտակէ զարնուած, «գրողի զարկած, հրեշտակակոխ» ըսել է: Արդարներբ բոլորովին հանդարտ ու առանց կռուի կը մեռնին, անոր համար Կիպրոսի Յոյները կ'ըսեն. ἀγγελοχαϊδεύομαι, ἀγγελοχαϊδεμένος = հրեշտակէն փայփայուիլ, սիրուիլ:

դ· Չար երազներբ սատանայէն են: Խօսքն առ հասարակ ամէն տեսակ դէշ երազի մասին է. երազ մը որ սարսափելի, օրհասական եւ գրգռիչ նկարագիր ունի սատանային կը վերագրուի: Վերջին տեսակին վրայ յատկապէս կը ծանրանայ Եզնիկ:

Ըստ Եզնիկի կարելի է բան մը երազել, որուն մասին մարդ ցերեկը մտադրած չէ եղած: Այս յառաջ կու գայ երկու պատճառներէ. Նախ «յԱստուծոյ շնորհացն ազդեցութենէ»: Եւ մի իմն (իմա՝ միւսն[51]) ի հակառակորդէն. քանզի նա անմարմին է, որպէս չունչ մարդոյն անմարմին. եւ ածեալ կերպարանս առաջի նկարէ, մերթ զկանաց՝ վասն ի ցանկութիւն գրգռելոյ, եւ մերթ զահագին զազանաց եւ զսողնոց՝ վասն զարհուրեցուցանելոյ. որպէս եւ Յոբն ասէ՝ թէ եւ երազովք զարհուրեցուցանես զիս: Եւ բազում անգամ ի կանաց կերպս եղեալ, զարս խաբէ յերազի. եւ է երբեք յարանց կերպս դարձեալ, զկանայս յանցուցանէ: Իբր ոչ եթէ արուական եւ իգական անդամք կայցեն նորա, այլ խաղտեալ զաման ցանկութեանն՝ տայ հեղուլ ի բաց զարութիւնսն: Եւ ոչ յորժամ ի մարդ մտեալ իցէ, եւ յարուական եւ յիգական բարբառս պատճառիցի, պարտ է հաւատալ, թէ արութիւն կամ իգութիւն գուցէ նորա» (205—206):

Ռամկական հաւատքը կ'ընդունի շատ անգամ՝ թէ չար ոգիները երկու սեռի են: Ասոր փաստ կը նկատէ ո՛չ միայն այդ երազները, այլ նաեւ դիւահարին հանած ձայնը, որ երբեմն կնոջ ձայն է, երբեմն ալ այր մարդու:

Ընդհանուր դիցաբանութիւնը յիշուած յատկութեամբ երազի ոգիներու գոյութիւնը կը սորվեցնէ: Իսկ համեմատական դիցաբանութիւնն այս ոգիներուն մէջ լուսնային տեսագծեր կը գտնէ: Լուսինը սեռային կեանքի ամենայայտնի աստուածութիւններէն մէկն է. անոր համար ալ երազի ոգիներն անոր նկարագրէն մաս մը ունին:

Նիւթիս հայող ժողովրդական հաւատուած մը հետեւեալը[52] կը պատմէ (Բուլանըխ). «Կ'ըսեն Նոյն օր մտաւ տապան, ջրհեղեղի վախտ՝ Նոյայ տղէկներուց մէկն չկրցաւ օր զինքը զաւթել (զսպել), յելաւ ուր անկողին, աղջիկ մ'եղաւ ուրին: Ջրերն օր յիջան՝ Նոյն ու ուր ճժեր դուս պտի յելնեն, էն աղջիկ մնաց ներս, հրեշտակն եկաւ հարցուց, թէ՝ «Նո՛յ, էլ մարդ չմնա՞ց ի ներս»: — «Չէ՛» ըսեց Նոյ: — «Թէ մարդ մանցեր է՝ եղնի՞ աներեւութք»: — «Թող եղնի», ըսեց Նոյ ուր ահուն (վախէն): Էն սհաթին աղջիկն եղաւ աներեւութ փէրի. յընկաւ աշխարհք, քնու մէջ մօտեցաւ մարդկտոց հետ, զու ցեղ չատցուց: Մարդ օր մկա (հիմա) յերազափորձ կ'եղնի, սաքաքն (պատճառը) ի՞նչ է, — էդ փէրիքն են»: Էնկիւրիի[53] հայերը «բերի գըզը, հիւրիւ գըզը, սարը գըզ» կը կոչեն այդ ոգիները. «Կը նկարագրուին միջահասակ, նկնահասակ, դեղին ու երկայն մազերով գեղադէմ էգ ոգիներ: Կը բնակին աղբիւրներու շուրջը, շատ անգամ բաղնիքներու մէջ: Գիշերը լուսնի հետ կ'ելլեն, անոր հետ կը մտնեն իրենց տեղերը: Ասոնք սիրահար են երիտասարդներու. իբր թէ գիշերն անոնց քնացած ատեն, իրենց սիրահարական կիրքերն ի գործ դնելով՝ կ'անհետանան»: Ջարոց ըրխէն (երեխան) խանից կ'ընի: Խանին խաբում ան, սատանախաբ (երազափորձ) ան գցում, խանից ըրխայ ա ընում. համա հըմէն էգ ան ընում, — չարոց որձը չ'ինի» ըստ Աստապատցիներու[54]: Ջաւախքցիները[55] գժոխքի երկսեռ հրեշտակներուն կը վերագրեն չար երազները: Նոր Բայազէտի[56] չուոտ ըսուած ոգիները միշտ կը ջանան մարդը խաբել եւ հրապուրել. անոնք մահկանացու են եւ ծնունդով կը բազմանան: Փետրուար ամիսը չուոտի ամիս կ'ըսուի, վասն զի այն ատեն անոնց արիւնը կը տաքնայ եւ երազներով կը հրապուրեն

---

[51] Բնագրին «մի իմն» ընթերցուածը սխալ գրչութիւն է եւ իմաստը կը պահանջէ, որ «միւսն» կարդանք: Այսպէս կ'առաջարկէ սրամտութեամբ Աճառեան, Քննութիւն, էջ 91—92:

[52] Ազգ· Հանդ·, Զ, 12:

[53] Բիւրակն, 1899, 534· հմմտ· 70, 520, 522—523, 540, 569, 668:

[54] Տ· Նաւասարդեան, Հայ ժողովրդական հէքիաթներ, է· գիրք, Թիֆլիս 1891, 29· հմմտ· Abeghian, Der arm. Volksglaube, 35—36:

[55] Ազգ· Հանդ·, Ա, 332:

[56] XVII, 107:

մարդիկը։ Եւդոկիացիները[57] սատանային երկու աղջիկ կու տան՝ Սլիկ եւ Բլիկ անուններով, որոնք դժոխքին դուռը կը պահպանեն։

Վերջապէս յիշենք նաեւ Եղիշէի[58] մէկ տեղիքը, որ Եզնիկի հետ սերտ առնչութիւն ունի. «Ապա ընդէ՞ր ոմանք ի նոցանէ (դեւեր, առհասարակ ոգիներ) ուտեն եւ ըմպեն եւ ընդ կանայս խառնակին եւ երգս եւ եղանակս երգեն...», կը հարցնէ ռամիկը։ «Այն ինչ զի ամենայն դեւք անմարմինք են, յայտնի է», կը պատասխանէ Եղիշէ. «...քանզի ոչ ուտեն եւ ոչ ըմպեն, որոց եւ ոչ է մարթ ընդ կանայս ամուսնանալ, եւ ի նոցանէ ծնունդ լինել. քանզի որ անմարմին է, նոյն եւ անսերմ է. զի սերմ մարմնաւորաց է եւ ոչ անմարմնոց. որոց եւ ոչ ծնունդ գոյ եւ ոչ մահ»։ Ինչպէս կը տեսնուի Եղիշէ աչքին առջեւ ունի նաեւ հրեշտակներու ամուսնութիւնը, որուն վրայ արդէն խօսք ըրինք։

Միջին դարու incubusն ու succubusը շատ կը զբաղցնէր ժողովուրդին միտքը։

Հ. Ա. ԳԱՐԱՄԱՆԼԵԱՆ



## ՀԱՅԵՐԷՆԻ ԱՄԲԻՈՆԸ ԲՐԻՒՍԷԼԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆՈՒՄ

Այսօր տեղի ունեցաւ այստեղ, Բրիւսէլում, «Արեւելեան Բանասիրութեան եւ Պատմութեան Կաճառի» (Institut de philologie et d'histoire orientales) հանդիսաւոր բացումը, որի մի ճիւղն է «հայերէն լեզուի եւ պատմութեան» ամբիոնը։ «Հանդէս Ամսօրեայ»ի 1930, Դեկտ. համարում ես արդէն պատմել եմ այս ամբիոնի ծագման եւ հաստատութեան պարագաները։

Համալսարանի Վարչութեան կողմից բազմաթիւ հրաւիրագիրներ էին ուղղուած գիտական հաստատութիւններին եւ տեղացի ու օտար դիւանագիտական շրջաններին։ Համալսարանի Փիլիսոփայութեան եւ Գրականութեան ճիւղի (Faculté de Philosophie et des Lettres) դահլիճը լի էր երկսեռ ընտիր հասարակութեամբ, որի մէջ կային մեծ թուով հայեր, երբ ժամը 15ին համալսարանի վերատեսուչը. պ. G. Smets բացման ճառն արտասանեց։ Նա խորին շնորհակալութիւն յայտնեց Կաճառի հիմնադիր նուիրատուին, որի անունը զգուշացաւ տալ, ինչպէս որ առանձնապէս խնդրել էր բարերարը։ Վերատեսուչն ի մէջ այլոց իր ուրախութիւնը յայտնեց, որ հայերէնը եւս այսուհետեւ իր կանոնաւոր բաժինը պիտի ունենար Բելգիական համալսարանի բարձրագոյն դասընթացքների մէջ։ Այնուհետեւ խօսեցաւ Պրոֆ. Գրէգուար (Henri Gregoire), որ նորահաստատ Կաճառի Փոխ–Նախագահն է եւ իսկական ղեկավարը։ Նա պատմեց թէ ի՞նչ պարագաներում է հիմնուած այս գիտական հաստատութիւնն եւ թէ նուիրատուն, որի անունը նոյնպէս զգուշացաւ տալ (բայց «Հանդէս»ի ընթերցողին յայտնի է), կամք է յայտնել, նոյն իսկ աւելցնել իր դրամական նպաստը, Արեւելեան Կաճառն եւս աւելի յառաջացնելու համար։ Պ. Գրէգուար երկարօրէն խօսեցաւ հայերէնի ամբիոնի կարեւորութեան վրայ, ծանօթացրեց ընտրուած ուսուցչապետի, Նիկող. Ադոնցի անձնաւորութիւնը եւ շնորհակալութիւն յայտնեց Համալսարանի կողմից այն հայերին, որոնք իրենց տարեկան որոշ նուիրատուութեամբ սատարեցին հայերէնի ամբիոնի հիմնուելուն։ Կաճառի հիմնադրամի կողմից որոշուած գումարի վրայ, այդ նպատակի համար, մի քանի հայ բարերարներ որոշեցին նոյնչափ գումար եւս իրենց կողմից յատկացնել, որով կարելի եղաւ գոհացուցիչ վարձատրութիւն նշանակել հայերէնի ուսուցչապետին։ — Երրորդ խօսողն էր Պրոֆ. Նիկ. Ադոնց, որ արտասանեց գաղղ. լեզուով իր առաջին դասախօսութիւնը՝ նիւթ առնելով «Հայերէնի ուսման կարեւորութիւնը» (L'Importance des Etudes Arméniennes) եւ մի հմտալից ու բովանդակալից ճառի մէջ ջատագովեց հայերէն լեզուի եւ պատմութեան կարեւորութիւնը ինչպէս բանասիրութեան նոյնպէս եւ Պատմութեան, առանձնապէս բիւզանդագիտութեան տեսակէտից։ Պրոֆ. Ադոնցի ճառը ընդունուեց ընդհանուր ծափահարութիւններով։ Այնուհետեւ խօսեցաւ Պարիզի Collège de Franceի ուսուցչապետ, կրօնների պատմութեան մասնագէտ Պրժիլուսկի (M. Jean Przylusky) — «Իրանական ազդեցութիւնը Հնդկաստանի եւ Չինաստանի վրայ», որ

[57] Գազանճեան, անդ, 22։
[58] Հարցմունք, 13։